# ՅԵՐՈՆԻՄԵԱՅ

## ԼԱՍՆ Ի ՔՍԱՆ ԵՒ ՅԵՐԿՈՒՍ ԳԻՐՍ ԱՌ Ի ՀԵԲՐԱՅԵՑԻՈՑ ԶԳԱՍՏՄՈՒԹԻՒՆՍՆ ԲԱԺԱՆԵԼՈՅ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆ-ՀԱՅԵՐԷՆ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՄԲ

ԵՒ

ՀԱՅ-ԼԱՏԻՆ ԲՆԱԳՐՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

**Հ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1920

# ՅԵՐՈՆԻՄԵԱՅ

## ՌՍՆ Ի ՔՍԱՆ ԵՒ ՅԵՐԿՈՒՍ ԳԻՐՍ ԱՌ Ի ՀԵՐՔԱՅԵՑԻՈՑ ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆՍՆ ԲԱԺԱՆԵԼՈՅ

---

ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՁԹ.



# HIERONYMI PROLOGUS GALEATUS

in altarmenischer Übersetzung

Herausgegeben von

P. ARISTACES VARDANIAN

Wiener Mechitharist.



WIEN

Mechitharisten-Buchdruckerei

1920.

# ՅԵՐՈՆԻՄԵԱՅ

## ՎԱՍՆ Ի ՔՍԱՆ ԵՒ ՅԵՐԿՈՒՍ ԳԻՐՍ ԱՌ Ի ՀԵԲՐԱՅԵՑԻՈՑ ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆՍՆ ԲԱԺԱՆԵԼՈՅ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆ-ՀԱՅԵՐԷՆ ՆԵՐԱԾՈՒԹԵԱՄԲ

ԵՒ

ՀԱՅ-ԼԱՏԻՆ ԲՆԱԳՐՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿԵՑ

**Հ. ԱՐԻՍՏԱԿԷՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1920

## Zur armenischen Übersetzung des Prologus Galeatus.

Die in allen armenischen Bibelhandschriften den Kg.-Büchern vorausgeschickte armenische Übersetzung des Prologus Galeatus von Hieronymus hat schon längst die Aufmerksamkeit der armenischen Forscher auf sich gelenkt und Anlass zu verschiedenen Meinungen über Verfasser und Übersetzer gegeben.

Zohrap (Armenische Bibel, Bd. II, S. 1) schreibt die Schrift Origenes zu. In seiner Herausgabe des fraglichen Schriftchens wiederholt Sukry (Bazmavep, 1877, S. 202ff.) den Zohrap, ohne von dem vor zehn Jahren durch A. Muratian veröffentlichten viel besseren Text Kenntnis zu haben. Muratian (Aršalujs Araratian, 1867, n. 811) hält die Schrift für einen sprachlich modifizierten Auszug aus Oskans Übersetzung des Prologus Galeatus. Kalemkiar (Geschichte der armenischen Journalistik, Wien 1893, S. 55.) führt die Frage zur endgültigen Lösung, indem er gegen

Zohrap den Hieronymus zum Verfasser der Schrift erklärt und gegen Muratian die Übersetzung derselben — wohl zu unterscheiden von Oskans Übersetzung, die auch in Mechithars Bibel Aufnahme gefunden hat — ins 5. Jahrhundert zurückdatiert. Ihm schliessen sich Norair (Koriun Vardapet, Tiflis 1900, S. 26—27) und Ter-Mosesian (Исторія Перевода, С.-Петербургъ 1902, S. 54—55) an.

Gänzlich unbekannt mit diesen Ergebnissen der Forschung, befasst sich Sargissian mit dem Schriftstücke (Grand Cataloque des Manuscrits arméniens de la Bibliothèque des PP. Méchitharistes de S.-Lazare. Venise 1914, Vol. I, S. 156). Die Angabe einer Venediger Handschrift, dass es von Hieronymus stamme und von Fra Augustin, O. Pr., im Jahre 1380 ins Armenische übertragen worden sei, würdigt er einer ernstgemeinten Untersuchung, und macht die Entdeckung, dass es sich um eine Abschrift des Fra Augustin von einer älteren armenischen Übersetzung handeln dürfte. Es ist aber hier ganz einfach von einer anderen späteren Übersetzung der Unitoren die Rede.

Wie in den lateinischen so auch in den armenischen Handschriften führt das Schriftchen verschiedene Überschriften, und

zwar 1. „Vorwort den Kg.-Büchern vorgesetzt“; 2. „Anlass und Inhalt der Kg.-Bücher und Vorwort den Königen vorgesetzt“, vgl. Praefatio Hieronymi in librum regum (Migne, Pat. Lat. XXVIII, S. 593 ff.). Dem Inhalte entsprechender ist aber die dritte klassische Überschrift: „Über die von den Hebräern vorgenommene Einteilung der Geschichten in 22 Bücher“.

Die armenische Übersetzung fliesst nicht aus dem lateinischen Original. Da nun aber die Ausschliessung dieser Schrift aus der durch Sophronius verfertigten Übertragung der Werke des Hieronymus wegen ihrer Wichtigkeit undenkbar ist, so gehen wir nicht fehl mit der Annahme auch einer griechischen Übersetzung, die mit anderen griechischen Schriften (vgl. Koriun, S. 18) die Reise nach Armenien gemacht und dort der armenischen Übersetzung zur Vorlage gedient habe. Auch sind die griechischen Übersetzungen der Lebensbeschreibungen von S. Hilarion und Paul des Eremiten abhanden gekommen, und doch sind die betreffenden armenischen Übersetzungen auf einen griechischen Text zurückzuführen (vgl. Norair, a. a. O., S. 27).

Die armenische Übersetzung deckt sich natürlich mit dem lateinischen Original nicht. Die jeweiligen Abweichungen, Ab-

kürzungen und Erweiterungen kommen auf die Rechnung der griechischen Übersetzung und der Zeiteinflüsse. Beachtenswert ist folgende Stelle der armenischen Übersetzung: „Judith und Tobias und der Hirte wurden des Kanons nicht würdig = Tobias et Pastor non sunt in canone". Migne (a. a. O., S. 593) möchte „Pastor" als Nachschub ausmerzen; manche Forscher ersetzen es mit 3. Machabaeorum — was auch Tathevaci in seinem Verzeichnisse der heiligen Bücher (Liber quaestionum, Konstantinopel 1727, S. 450) tut — während wieder andere die Umänderung des „Pastor" in Philopator oder Esther als eine befriedigende Lösung vorschlagen. Doch das armenische Hoviv ist der unwiderlegliche und altehrwürdige Zeuge für die Echtheit von Pastor.

Die armenische Übersetzung trägt an sich den Stempel klassischen Ursprungs. Wir können auf sie das rühmliche Wort des Hieronymus von Sophronius anwenden: cum elegante sermone transtulit (De viris illustribus, c. 134). Die Verlegung der armenischen Übersetzung ins 8. Jahrhundert, ist ein literarischer Missgriff von seiten des Ter-Mosesian (a. a. O., S. 274).

Durch meine gründliche Untersuchung der sprachlichen auffallenden Ähnlichkeiten unserer Schrift mit dem armenischen Chro-

nicon des Eusebios erhebe ich die Ansicht des Norairs (vgl. Koriun Vardabet, S. 26) zur Gewissheit: die armenischen Übersetzungen von Chronicon und Prologus sind von derselben Hand bewerkstelligt.

Meiner Neuausgabe habe ich die Handschriften Nr. 55, 71, 47, 305 (= A, B, C, D) der Wiener Mechitharisten-Bibliothek und die kritisch wertlosen Ausgaben von Muratian (= E), Sukry (= F), Zarbhanelian (= G) zugrunde gelegt. Zur übersichtlichen Darstellung des Verhältnisses vom Armenischen zum Original, gebe ich auch das Letztere dem Ersteren parallel in Druck wieder, indem ich von den Varianten der Migneschen Ausgabe diejenigen in meinen Text herübernehme, die mit der armenischen Übersetzung übereinstimmen. Zur Vervollständigung meiner Arbeit füge ich auch Oskans sklavische Übersetzung bei.

P. ARISTACES VARDANIAN
Wiener Mechitharist

## ՅԵՐՈՆԻՄԵԱՅ

### ՎԱՍՆ Ի ՔՍԱՆ ԵՒ ՅԵՐԿՈՒՍ ԳԻՐՍ ԱՌ Ի ՀԵԲՐԱՅԵՑԻՈՑ ԶՊԱՏՄՈՒԹԻՒՆՍՆ ԲԱԺԱՆԵԼՈՑ

Հայ բնագիրը եւ տեսութիւններ: — Զօհրապեան Թագաւորութեանց գրքին նախադրութեան կը կցէ սա ծանօթութիւնը. “ի գրչագիր օրինակս մեր յառաջ քան զայս նախադրութիւն գտանի եւ այլ՝ մակագրեալ Յառաջաբան Նախակարգեալ Թագաւորութեանց, զորմէ ակնարկի յառաջիկայդ լինել Որոգինեայ: Այլ քանզի պարունակութիւն բանիցն որ ի նմա ձգի ի վերայ անձնիւր գրոց աստուածաշունչ մատենին՝ քան Թագաւորութեանցն առանձինն, յայն սակս զանց արարեալ դնել աստանօր, ի դէպ համարիմ եւ զնոյն կարգել ի վախճանի ընդ այլ եւս գրուածս գտեալս ի գրչագիր աստուածաշունչս մեր, այլում պատեհագոյն ժամանակի թողեալ հետազօտել վասն մատենագրի նորին[1]„: Այս

[1] Աստուածաշունչ մատեան հին եւ նոր կտակարանաց, Վենետիկ 1805, հատոր Բ, էջ 1, ծանօթ.:

խոստումը սակայն չիրագործուիր “յաղագս կարի իմն երկարաձգութեանն„ Հրատարակութեան եւ դիպողագոյն առիթներու կը յետաձգուի՝ առանձին տպագրութեամբ լոյս տեսնելու՝ գրական կամ պատմական ուրիշ հատուածներու հետ[1]։

Ս ո ւ ք ր ե ա ն՝ յեցած անտարակոյս Զ օ հ ր ա պ ե ա ն ի տուած այս ծանօթագրութեան, իր “Աստուածաշունչ. Թարգմանութիւն Եօթանասնից եւ Հայկականն եւ ամբողջութիւն նոր կտակարանին„ ուսումնասիրութեան մէջ[2] Հրատարակութեան տալով խնդրական հատուածը՝ գրեթէ բառացի կը կրկնէ Զ օ հ ր ա պ ե ա ն ի տեղեկութիւնները. “կը գտնենք այս տեղ, կը գրէ, հայկական ձեռագրաց մէջ գտնուած երկարագոյն յառաջաբան մը Թագաւորութեանց գրոց, յորում կը խօսուի եբրայական գրոց շարքին եւ անոնց անուանց վրայ„, յետոյ կը ներկայացնէ “Վաան է յեբրէա-գէրս աա է Հեբրայեցւոց ղղափմոնբինան բամանեւրյ„ հատուածը ու կը յաւելու. “այս յառաջաբանս, զոր ի նախնեաց ձեռա-

[1] Անդ, հատոր Դ, Յաւելուած Աստուածաշունչ մատենից, ծանուցումն, էջ 3։

[2] Բազմավէպ 1877, էջ 202—203։

գրած հոս կարգեցինք, թերեւս նոյնն ըլլայ,
զոր կը յիշատակէ Թագաւորութեանց Նա-
խադրութեան շարագրողն եւ կ'ըսէ. Այլ զի
Եբրայեցիք յերկուս գիրս բաժանեն զգիրս
Թագաւորութեանցս, եւ այլք ի չորս,
գտցես զայս ի յառաջաբանի անդ հնոցն,
զոր ես կարծեմ գոլ Որոգինի, որ յոյժ
հմուտ էր եբրայեցւոյն[1]„։

Չի գիտեր հետեւաբար Սուքրեան
թէ իր հրատարակութենէն ճիշդ տասը տարի
առաջ արդէն Ա. Մուրատեան (Գա-
հիրէ) “Արշալոյս արարատեան-ի մէջ հրա-
տարակած է աւելի կատարելագոյն բնագիր
մը, աւելի կատարելագոյն տեղեկութիւննե-
րով։ Հարկ է ծանօթանալ այս տեղ Մու-
րատեանի տուած տեղեկութիւններու
այն տողերուն, որոնք ուղղակի կապ ունին
իր հրատարակած հատուածին հետ. “Այս
օրերս քանի մը երես հին ձեռագիր ձեռքս
անցաւ, մաքուր պահուած, որ կ'երեւի թէ
ձեռագիր Աստուածաշունչի մը սկիզբէն կամ
վերջէն ինկած պիտի ըլլայ. եւ համարելով
թէ բոլորովին անարժան չէ գիտնոց առջեւ
ելլելու, ամենայն զգուշութեամբ օրինա-
կեցի եւ միայն օ ի տեղ գործածուած ո—երը

[1] Բազմավէպ 1877, էջ 202, 203։

(կարդա՝ ա–երր)՝ ըստ այժմեան սովորու-
թեան օ գրելով՝ ձեզի կը խրկեմ պա-
տուական օրագրոյդ միջոցաւ հրատարակելու
համար...։ Այս ձեռագրոյն վերնագիրն է
“Վ ասն է յերկու-ս Գիրս ու- է յեճրայեցւ-ոց
ղղափօնո-ընէ-նն բաժանելոյ, որ քաղուած մը
ըլլալու է անշուշտ եւ ոչ ամբողջ թարգ-
մանութիւն Ցէրօնիմոսի ատ-աղջաբանո-ընէ-ն
տողա-արփէալ վերնագրով գրուածքին, որ
կը գտնենք Մխիթար Աբբայ Հօր Վենետիկ
տպած մեծ պատկերազարդ Աստուածա-
շունչին վերջը„։ Մ ո ւ ր ա տ ե ա ն այս հա-
տուածին եւ իր օրինակին մէջ կը նկատէ
զգալի տարբերութիւններ, մանաւանդ շա-
րադրութեան, այսինքն մինչ իրը յատակ
է՝ միւսը խճողուած է օտար ու անիմա-
նալի ձեւերով, ու այս տարբերութիւնները
թոյլ կու տան իրեն մակաբերելու թէ
“ասիկա ուրիշ թարգմանութիւն մըն է՝
միայն հարկաւոր մասերը քաղելով„։ Սա-
կայն նոյն տարբերութիւնները նշանակելու
հարկ չի տեսներ Մ ո ւ ր ա տ ե ա ն, քանի
որ ընթերցողները կրնան դիւրաւ տեսնել՝
երկուքն ալ ընթեռնլով [1]։

---

[1] Արշալոյս արարատեան, Զմիւռնիա 1867, թիւ 811։

Մէջ բերուած այս կարծիքները վերջնականապէս ու որոշակի կը լուսաբանէ Գալէմքեարեան մատնանշելով Զօհրապեանի դէմ թէ "այս յառաջաբանը չէ Որոգինեայ, այլ Ս. Ցերոնիմոսի, որուն լատին բնագիրը Vulgataի սկիզբը կը դրուի In totam Scripturam Prologus galeatus վերնագրով, եւ Մուրատեանի դէմ թէ "այս յառաջաբանը, ինչպէս լեզուն կը վկայէ, Ն. դարու թարգմանութիւն է, զոր Ոսկան չուննալով՝ իր Աստուածաշնչին յառաջաբանին մէջ կը թարգմանէ[1] լատին բնագրէն իր աղաւաղ լեզուաւ եւ կը տպէ դարձեալ Մխիթար Աբբահայր իր Աստուածաշնչին եւեւն՝ այս վերնագրով. Գէրօնիմոսի առաջաբանութիւն սաղաւարտեալ[2]": Այսպէս նաեւ Նորայր իր "Կորիւն վարդապետին"[3] մէջ եւ Տէր-Մովսէսեան՝ "Պատմութիւն սուրբ գրոց

---

[1] Ոսկան կը թարգմանէ՞ թէ ստորեւ յիշուած Ֆրա Աւգոստինոսի թարգմանութիւնը կը գործածէ, քննելի է։

[2] Պատմութիւն հայ լրագրութեան ի սկզբանէ մինչեւ մեր օրերը, Վիեննայ 1893, էջ 55։

[3] Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, Տփղիս 1900, էջ 26—27։

հայկական թարգմանութեան, ուսումնասիրութեան մէջ[1]։

Բացարձակ անծանօթ երկիրներ մնացած են Սարգիսեանի համար յառաջ բերուած այս տեղեկութիւններն ու իրողութիւնները. իրեն յատուկ հապճեպաբանութեամբ կը գրէ Սարգիսեան. "Գալով յառաջաբանին ծագման՝ արժանի է լուրջ քննութեան։ Մեր գրատան հին եւ նոր Կտակարանաց Ձեռագիր [illegible] մը մէջ Ս. Հերոնիմոսի վերագրուած է այս

[1] Исторія Перевода Библіи на армянскій языкъ, С.-Петерб. 1902, էջ 54—55։ — Հոս յառաջ կը բերէ նաեւ Զարբհանալեան, որ կը գրէ "յառաջ քան զամփոփական եւ զծանօթ նախադրութիւն առաջին Թագաւորութեան Գրոց, կայ ուրիշ նախաբանութիւն մըն ալ յաղագս բաժանելոյ զաստուածաշունչ գիրս ի քսան եւ երկուս, հետեւեալ վերնագրով. Յառաջաբան նախակարգեալ Թագաւորութեանց վասն ի յերկուս (զոր պարտ է ընթեռնուլ ի քսան եւ յերկու) գիրս առ ի հեբրայեցւոց զպատմութիւնսն բաժանելոյ. զի քսան եւ երկու նշանագրաւք վարին եբրայեցիք եւ ապա կը թուէ մի առ մի զգիրս սուրբս ըստ հեբրայական տառիցն յորջորջման". Հայկական Թարգմանութիւնք Նախնեաց, Դար Դ.—ԺԳ., Վենետիկ 1889, էջ 143։ Մեր հրատարակութեան մէջ նկատի առնուած է Զարբհանալեանի այսպէս անորոշ գիծերով մէջ բերած հատուածը. անդ, էջ 134—135։ Ինչպէս կը տեսնուի Զարբհանալեան ալ տեղեակ չէ Մուրատեանի եւ Սուքրեանի հրատարակութիւններուն։

գրուածս եւ իբր թէ թարգմանուած ի լատինէ՝ յամի Տեառն 1380, ձեռամբ Փրա Աւգոստինոսի ի կարգէն քարոզչաց, ու յառաջ կը բերէ սա յիշատակարանը. «Կատարեցան նախագրութիւնք եւ գլուխք բոլոր Հին եւ Նոր Կտակարանացն Աստուծոյ ըստ շարագրութեան երանելոյն Հերոնիմոսի, եւ յեղափոխեալ եղեւ ի յայս ձեռամբ յանցաւոր գրչէ՝ Փրա Աւգոստինոսի ի կարգէ Եղբարց Փրէտիկատորացն ի քաղաքս Ըղէժ, յամի Տեառն ՌՅՁ, ի Փետրուար ԺԸ.»։ Առանց սակայն անդրադառնալու թէ հոս խնդիրը նորագոյն «ունիտորական» թարգմանութեան մը մասին է, Սարգսեան կը փութայ անմիջապէս ժամանակագրական ծանօթագրութիւններով ապացուցանել ու հաստատել ջանալ թէ «Փրա Աւգոստինոսի գրածը կամ կեղծիք է եւ կամ «յեղափոխեալ եղեւ ի յայս բացատրութեամբ» պարզապէս ընդօրինակութիւն հասկնալի է եւ ոչ թէ թարգմանութիւն։ Այս այսպէս ըլլալով հանդերձ, հաւանական է որ Հերոնիմոս գրած ըլլայ ստուգիւ թագաւորութեան նախակարգեալ յառաջաբանը դէթ եւ մեր նախնիք Փրա Աւգոստինոսէն շատ կանուխ թարգմանած ըլլան զայն ի

Հայ բարբառ», եւ այլն[1]։ — Կարելի չէր առաւելապէս «խարխարել ի միջօրէի»։

Prologus Galeatus. — Ցերոնիմեայ խնդրոյ նիւթ այս յառաջաբանութիւնը Migneի Հրատարակութեան մէջ կը կրէ Praefatio Hieronymi in libros Samuel et Malachim[2] անունը, մինչ ուրիշ ձեռագիրներ ունին միայն Praefatio Hieronymi in librum regum կամ in libro regum; այս ընթերցուածին մերձ է նաեւ Հայերէն Ս. Գրքերու մէջ պահուած յայտնապէս յետնադարեան «Յառաջաբան Նախակարգեալ Թագաւորութեանց» գլխակարգութիւնը, նոյնպէս եւ «Գիրք պատճառաց»ի աւանդած «Սկիզբն եւ պատճառ Թագաւորութեան Գրոց եւ յառաջաբան Նախակարգեալ Թագաւորութեանցն»։ J. Martianay է որ՝ յառաջաբանութեանս բովանդակութիւնը նկատի առնելով՝ կը փոխէ այս գլխակարգութիւնը եւ կը դնէ Praefatio Hieronymi presbyteri de omnibus libris Veteris Testamenti, քանի որ այս

---

[1] Մայր Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա 1914, էջ 156։

[2] Migne, Pat. lat. 28, էջ 593—603, տես նաեւ Fessler, Institutiones Patrologiae, II, էջ 184։

ընթերցուածը շատ լաւ կրնայ յարմարիլ այն ամէն գրքերուն, զորոնք Յերոնիմոս եբրայականէն փոխեց լատիներէնի[1]. այս ենթադրութիւնը Յերոնիմոս ինքնին հաստատել կը թուի երբ կը գրէ hic prologus, Scripturarum quasi galeatum principium, omnibus libris quos de Hebraeo vertimus in Latinum, convenire potest: ut scire valeamus, quidquid extra hos est, inter apocrypha esse ponendum = Այս առաջաբանութիւն, կտակարանաց իբրեւ սաղաւարտեալ սկիզբն, ամենեցուն գրոց զորս յԵբրայեցւոյն թարգմանեցաք ի Լատինականն, պատշաճանել կարէ. զի կարասցուք գիտել՝ զինչ ինչ արտաքոյ սոցա է՝ ի մէջ ծածկելոցն է դնել[2]: Ահա այս հիման վրայ է որ յառաջաբանութիւնս սովորաբար համառօտակի կը կոչուի Prologus galeatus եւ Վուլգատայի հրատարակութիւններու սկիզբը կը դրուի իբրեւ ընդհանուր յառաջաբան[3]: Հայ թարգմանու-

[1] Migne, Pat. lat. 28, էջ 593, ծանօթ.:

[2] Ոսկանի Երեւանեցւոյ Աստուածաշունչ Հնոց եւ Նորոց կտակարանաց Ներպարունակօղ, Յամսթերտամ 1866, Բ, էջ 746:

[3] Տես միայն Loch, Biblia sacra Vulgatae

*թեան ընծայած “Վ ան է քոան ե—[1] յերկոու գիրս ատ— է Հեբրայեցւոց պղատփոխ–ըխ–նան ճա ժանելոյ„ ընթերցուածը հետեւաբար շատ յարմար յղացուած է՝ յառաջաբանութեանս բովանդակութեան կատարելապէս համապատասխանելուն։*

*Հայերէն Թարգմանութիւնը։* — *Երբեք հաւանական չէ ընդունիլ թէ հինգերորդ դարու թարգմանիչները ուղղակի լատիներէնէ բնագիրներ հայացուցած ըլլան. այս ընդհանուր կարծիքին հանդէպ Աւգերեանի “Բազմավէպ„ի մէջ ընթացած*

---

editionis, Ratisbonae, t. I, էջ XVI եւ Arndt, Biblia sacra Vulgatae editionis, Ratisbonae 1899, էջ XII։

[1] Տրամագրելի բոլոր օրինակները կը կարդան “վան է յերկոու գիրս . . .„ համմատէ նաեւ Սարգիսեան, Ցուցակ, էջ 52, 73, 96՝ “է յերկոու„, էջ 120՝ “յերկոու„, էջ 104՝ “յերկու„, էջ 88՝ “զէ յերկոու գիրս„. Զարբհանալեանն է որ կ'անդրադառնայ այս վրէպ ընթերցուածին եւ կ'ուղղէ “վան ի քսան եւ յերկու գիրս„, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, էջ 134. ուղղագոյն է սակայն եւ հայերէն՝ Նորայրի ընթերցուածը “վան է քոան ե— յերկոու գիրս . . .„, Կորիւն վարդապետ, էջ 26, զոր կ'ընտրեմ նաեւ ես։ Այս վրիպակը յառաջ եկած է պարզապէս “է է. ե— յբ. գիրս„ համառօտագրութենէն, ուր երկու “է„ներէն մին սովորական երեւոյթի մը հետեւանքով ինկած է, համմատէ Նորայր, Բառաքննութիւն, Կ. Պոլիս 1880, էջ 27—32։

«տարբեր ճամբան» եւ նշմարած «բոլորովին նոր ասպարէզ»ը[1] կը մնայ միշտ անձնական ենթադրութիւն. այս է գոնէ մեր համոզումը։

Յերոնիմեայ խնդրոյ նիւթ յառաջաբանութիւնը իր կարեւորութեանը համար ունեցաւ անտարակոյս իր յունարէն թարգմանութիւնը. այս մասին բացորոշ յիշատակութիւն մը գոյութիւն չունի. գիտենք սակայն որ Յերոնիմեայ գրութիւնները յունարէնի կը վերածուէին իրեն ժամանակակից եւ բարեկամ Սոփրոնիոսի ձեռքով, ինչպէս ինքն անձամբ կը յիշատակէ De viris illustribusի մէջ.

Sophronius, vir apprime eruditus ... nuper de subversione Serapis (περὶ τῆς καταλύσεως Σεραπείου) insignem librum composuit, de Virginitate quoque ad Eustachium et vitam Hilarionis monachi, opuscula mea in Graecum cum eleganti sermone transtulit: Psalterium quoque et Prophe-

---

[1] Հ. Յ. Աւգեր. «Լատին լեզուն եւ գրականութիւնը Նախնեաց քով», Բազմավէպ 1909, էջ 59—66 եւ 145—160, 1910, էջ 559—569. Համմտէ Ակինեան, «Ս. Իրենէոս հայ մատենագրութեան մէջ», Հանդ. Ամս. 1910, էջ 200—208, ուր Աւգերեանի գրութիւնը կ՚անուանուի «երեւակայութիւն եւ պատրանք»։

tas quos nos de Haebreo in Latinum vertimus[1].

Յերոնիմոսի այս եւ ուրիշ թարգմանածոյ գրութիւնները՝ տարածուեցան անտարակոյս եւ հասան մինչեւ "ի կողմանս Յունաց", ուստի "աստուածատուր գրոց հաստատուն օրինակներու" հետ եւ "բազում շնորհագիր հարց յետ այնր աւանդութեամբք[2]"՝ փոխադրուեցան Հայաստան եւ թարգմանուեցան ընտրանօք դասական Յերոնիմեայ վայել դասական սքանչելի հայաբանութեամբ։ Եւ իրօք Հիլարիոնի վարքը, որուն Սոփրոնեայ թարգմանած յունարէնը չկայ այսօր, ունինք հայերէն թարգմանութեամբ, որ սակայն դժբախտաբար համառօտուած է եւ ենթարկուած նոր խմբագրութեան ու տուժած հետեւաբար իր նախկին դասական նկարագիրը[3]. մինչդեռ "վարք սրբոյն Պաւղոսի անապատականի" հրաշքով կարծես ազատած

---

[1] Migne, Pat. lat. 23, էջ 755, ուր կայ նաեւ հրատարակուած De viris illustribus-ի յոյն բնագիրը։

[2] Կորիւն. հրատ. Վենետիկ, էջ 18։

[3] Վարք Հարանց, Վենետ. 1885, Ա, էջ 327—330, լատին բնագիրը Migne, Pat. lat. 23, էջ 30—54։ Չեմ յիշեր ընդարձակագոյն հրատարակութիւնը, Սոփ. ԻԲ, 69—137։

է աւերիչ ձեռքերէն եւ հաստատուն պահած հինգերորդ դարու ինքնատիպ իր լեզուն ու ոճը[1]։

Նոյնպէս մեր յառաջաբանութիւնը, թէպէտ եւ կրճատուած է, սակայն ունի դեռ դասական ոսկեղէն լեզուին պահանջած բոլոր յատկութիւններն ու նրբութիւնները։ Ես կը կարծեմ թէ յոյն թարգմանութիւնը արդէն կրճատած էր յառաջաբանութեան վերջին մասը, որ, ինչպէս նկատած է Գալէմքեարեան, ընթերցողին ուղղուած խօսք մըն է, որ չի վերաբերիր իրին էութեան[2], եւ փոխած գլխակարգութիւնը ծանօթ "Վասն է տասն Եւ յէրէկ… Գէրե....", շատ յարմար խօսքերով։ Այս եւ յաջորդ տարբերութիւնները, չեղում

[1] Վարք սրբոց Հարանց, հատոր Ա, էջ 1—16 = Vita S. Pauli Primi Eremitae, Migne, Pat. lat. 23, էջ 18—30, ուր կայ Յերոնիմեայ յիշատակարանը. Obsecro, quicunque haec legis, ut Hioronymi peccatoris memineris, cui si Dominus optionem daret, multo magis eligeret tunicam Pauli cum meritis eius, quam regum purpuras cum poenis suis = "Եւ արդ եւ աղաչեմ զամենայն ոք որ ընթեռնու զայս, զՅերոնիմոս զմեղաւոր յիշել, որ կամաւքն Աստուծոյ զպարեգաւտն Պաւղոսի երանելւոյ կամէր հաւատովքն նորա, քան զթագաւորաց ծիրանիսն հանդերձ պատուով (sic) նոցա" Վարք Հարանց, էջ 16.

[2] Պատմութիւն հայ լրագրութեան, էջ 56։

*ները ու ընդլայնումները, որոնք կը նշմա-րուին լատին եւ հայ բնագիրներու միջեւ, կարելի է թերեւս մեկնել նաեւ իբրեւ ար-դիւնք յոյն բնագրի մը ճշգրիտ հետեւո-ղութեան:*

*Նախաբնագրին* nam et ipsi viginti duo elementa habent eodem sono, sed. diversis characteribus. Samaritani etiam ... *հատուածը հայ թարգմանու-թիւնը կը ներկայացնէ փոխուած եւ յաւե-լուած «եւ զոյգ նշանագրաւք վարին քաղ-քառաքեալ նոյնովք, բայց գրեն այլափոխ նկա-րագրոշմիւք: Եւ ոչ միայն նոքա, այլ եւ Սամարացիք»..., տող* 6—8: Certumque est Esdram scribam... *այս հատուածն ալ ընդլայնուած է ճարտարօրէն հայուն քով. «Իսկ Եզրասն դպիրն ուղղէր զԷ ճշմա-րիտ իցէ», տող* 12—13. — *բուն բնա-գրին մէջ գոյութիւն չունի յաջորդող «Եւ ող-ջառաջինն», տող* 17, *որուն հարազատու-թեան մասին ծանրապէս կը տարակուսիմ.* eiusdem numeri texuntur alphabeto; *բոլորովին սանձարձակ է այս տեղ հայ բնա-գիրը. «Նոյնքն Բոլոր նոյնքն նշանագրաց հար-գեալք եւ երգեալք գտանեմք», տող* 33—35 — *«քսան եւ երկու նշանագիրք են,*

որովք գրեալ ամենայն ինչ եբրայեցերէն բարբառով յառաջ եկեալ հասանի․, տող 49—51․ դարձեալ շատ տարտամ է այստեղ խօսքին իմաստը, ձեռագիրներն ալ ունին հետեւաբար զգալի տարբերութիւններ, որոնց մէջէն սակայն լաւագոյնն է կարծեմ վերապահօրէն ընտրուածը, լատինն ունի viginti duo elementa sunt, per quae scribimus hebraice omne quod loquimur, et eorum initiis vox humana comprehenditur. — ita viginti duo volumina supputantur, quibus quasi litteris et exordiis, in Dei doctrina, tenera adhuc et lactens viri iusti eruditur infantia, հայ թարգմանութիւնը այնքան պերճ ու այնքան ինքնատիպ է այստեղ որ կրնանք հայ թարգմանչին ալ տալ անվերապահ Յերոնիմոսի գովասանքը թէ cum eleganti sermone transtulit; "Նոյնպէս քսան եւ երկու գիրք աստուածակերտ գումարութեանն թուին ընդ ամենայն ըստ նշանագրացն, որ խելամուտ առնեն ուսուցանել զԱստուծոյ եւ զազնուապաշտաւն լինելոյ, առ ի խրատելոյ զտակաւին զմատաղագոյն եւ զկաթնակեր բարս առն արդարոյ", տող

52—59. — tertius ordo Hagiographa possidet. Et primus liber incipit a Iob, գեղեցիկ է հայուն շարուածքը «եւ երրորդ դարձեալ գումարութիւն Եբրայեցւոց, յորզորբագիրսն կարգեն եւ այնր առաջին զՅոբ դնեն», տող 92—94. մինչդեռ շատ մութ ու շատ անորոշ է «երկրորդ զԴաւիթ, առնեն եւ հինգ մատենագրութիւնս, առաջին զ[illegible]ոյն Գիր թուեն. Երկրորդ զՍողոմոնին. Երրորդ զԱռակացն...», տող 94 97, լատինն ունի որոշ եւ պայծառ secundus (incipit) a David: quem quinque incisionibus et uno Psalmorum volumine comprehendunt. Tertius est Salomon, tres libros habens: Proverbia եւ այլն. — դարձեալ անյայտնի առեղծուածային է եւ խանգարուած «որ Գիրք Մնացորդացն անուանին եւ վերկոսէանն ողջ ա[illegible]ցանէ է մէնջ» ընթերցուածը, տող 105—107. որուն հանդէպ նախաբնագիրն ունի quod significantius Chronicon totius divinae historiae possumus appellare, qui liber apud nos Paralipomenon primus et secundus inscribitur:

Մասնաւոր ուշադրութեան կը յանձ-

նեմ ի վերջոյ այս տեղ հետեւեալ շատ կարեւոր դիտողութիւնը «Յուդիթ եւ Տուբիա եւ Հովիւ չեղին արժանի կանոնի» կամ ինչպէս կը գրեն CD «եւ Հովիւ կոչեցեալ գիրք չեղին արժանի ի կարգ ածել ընդ այլ կանոնեալսդ», տող 123—125, Tobias et Pastor non sunt in canone. Քանի որ Հերմայ „Pastor"ի մասին է անտարակոյս այս տեղ խնդիրը՝ պէտք ենք ընթերցուածս յանկուցն ներմուծում մը ենթադրել, կը գրէ Migne, եւ քանի որ ուրբանեան ձեռագրի մէջ չկայ խնդրական այս անունը, կը ցանկայ ջնջուած տեսնել նաեւ միւս ձեռագիրներու մէջ. կան գիտուններ որոնք այս անուամբ կ՚ուզեն հասկնալ Մակաբայեցւոց Գ. գիրքը, իսկ ուրիշներ չկարենալով համոզիչ մեկնութիւն մը տալ՝ կը փորձեն սրբագրել եւ ընթեռնուլ Philopator կամ նաեւ Esther. ինչ որ ալ ըլլայ սակայն դժուարութիւնը, այս յայտնի է թէ «Հովիւ» ընթերցուածը անընկճելի վկայ կանգնած է Pastorի հարազատութեան եւ հետեւաբար անհնար է ընդունիլ այս տեղ ո եւ է ջնջում, փոփոխում կամ սրբագրութիւն. Տէր-Մովսէսեան Կարենեան Ցուցակի թիւ 73 ձեռագրէն

(ԺԸ դար) ռուսերէն թարգմանութեամբ յառաջ կը բերէ Միրաքի կցուած հետաքրքրական յառաջաբանութեան մը վերջին մասերը, ուր կը կարդանք կարեւոր սա խօսքերը "սոյնպէս եւ զՅուդիթ Տուբիայ[1] եւ զՀովիւն (канону книги Юдиөи, Товія, Пастыря) եւ զգիրս զայս Յեսուայ չհամարեցան արժանի կանոնի... Սակայն զգիրս Յեսուայ եւ զՅուդիթն նոյնպէս երկբայութեամբ ունին. իսկ Հովիւն [illegible] Հայոց[2]", այս տեղեկութեան աղբիւրն եղած է, հարկաւ, Յերոնիմեայ յառաջաբանութիւնը:

Հայ թարգմանիչը: — Նորայր դասաւորելով յառաջաբանութիւնն՝ կը ծանօթագրէ թէ թարգմանուած է յունարէնէ եւ հաւանականաբար "ի թարգմանչէ Եւսեբեայ Ժամանակագրութեանն եւ Քրոնիկոնին[3]": Մասնաւորապէս կը ծանրանամ

---

[1] Թիւրիմացութեան տեղի չտալու համար կարդալու է "զՅուդիթ, զՏուբիա եւ զՀովիւն", ինչպէս արդէն հասկցած եւ թարգմանած է Տէր-Մովսէսեան, Исторія Перевода Библіи на армянскій языкъ, էջ 148:

[2] Տէր-Մովսէսեան, անդ, էջ 148—149, 150:

[3] Կորիւն վարդապետ եւ նորին թարգմանութիւնք, էջ 26:

հոս այս մասին անոր համար, որովհետեւ ժամանակագրութեան թարգմանիչը կը ստիպէ զմեզ ընդունիլ Յերոնիմեայ յառաջաբանութեան համար յոյն բնագրի մը անհրաժեշտ գոյութիւնը: Եւսեբեայ թարգմանիչը յունագէտ մըն է, որ կը թարգմանէ հաւատարմօրէն բառական իր բնագիրը, ըլլալով միեւնոյն ատեն նաեւ քաջ հայերէնագէտ մը, որ կը պճնէ կը զարդարէ եւ երբեմն կը փոխէ կը հայացընէ սքանչելիօրէն, բայց երբեք լատինագէտ չէ. այսպէս կը կարծեմ եւ համոզուած եմ յենլով Եւսեբեայ թարգմանութեան նշանաւոր սա տեղիքին. „Զորոյ իշխանութիւնն առեալ Նորին որդւոյ Ասկանայ՝ շինէր զԱլբան, որ այժմ Պոնկա[ս]ն կոչի, զոր անուանեաց յանուն գետոյն՝ որ յայնժամ Ալբան կոչէր... քանզի Ղատինացիք ըստ իւրեանց բարբառոյ զսպիտակ ալբան անուանեն[1]", ուր ակնյայտնի է թէ թարգմանիչը բացարձակա-

[1] Եւսեբեայ Պամփիլեայ կեսարացւոյ ժամանակականք. Աւգերեան, Ա. հատոր, էջ 387—388, տես նաեւ Eusebius Werke, V. Band: Die Chronik, aus dem Armenischen übersetzt von J. Karst, Leipzig 1911, էջ 137 եւ Թոռնեան, Հատընտիր ընթերցուածք ի մատենագրութեանց նախնեաց, Ա. Վիեննա 1891, էջ 375:

պէս չի գիտեր «սպիտակ» բառին լատիներէնը եւ գայթելով յունարէնի ընծայած հայցականաձեւ Ἀσκάνιος υἱὸς ἔκτισεν Ἄλβαν τὴν νῦν καλουμένην Λόγγαν ընթերցուածէն փոխանակ «Ալպա»ի = alba կ'ընդունի «Ալպան» ուղղական մը, որ սակայն գոյութիւն չունի։ Նորայր թարգմանիչներու նոյնութիւն ընդունելու մղուած է անտարակոյս աչքի առաջ ունենալով լեզուական զգալի նմանութիւնները, որոնց պէտք ենք ծանօթանալ այստեղ.

1. «Որ խելամուտ առնեն ուսուցանել զԱստուծոյ եւ զաստուածապաշտութեան լինելոյ», Յերոն., տող 54—56 = Սիմոն Հրէից քահանայապետ, որ եւ արդար իսկ կոչեցաւ եւ վասն որ առ Աստուած ա-ստուածապաշտութեան լինելոյ եւ առ ազգակիցսն խնամակալ, Ճանաչէր», Եւսեբ., Քրոն. Բ, էջ 227—228 ὅς διʼ εὐσέβειαν πρὸς Θεόν։

2. «Քսան եւ երկու գիրք աստուածակերտ գումարութեանն թուին ընդ ամենայն», Յերոն., տող 52—53. «Եւ այսպէս գումարին միանգամայն հնոյ աւրէնսդրութեան գիրք քսան եւ երկու ընդ ամենայն», տող 110—112 = «ընդ ամենայն

միանգամայն լինին (ամք) վճձգ», Եւսեբ․, Քրոն․ Ա, էջ 141․ «Եւ ընդ ամենայն յԱդամայ ամք ռջխը», անդ, էջ 143․ «եւ ընդ ամենայն յԱդամայ մինչեւ ցելսն յԵգիպտոսէ ․․․ ամք վոձթ», անդ, էջ 155․ «եւ ընդ ամենայն յԵգիպտոս յամելոյն եբրայեցւոց ժամանակք մժե», Բ, էջ 92 եւ այլն։

3․ «Արդ թուեն Եբրայեցիք զգիրս Մովսիսի զայս յէ– ա–ըյէնակէ», Յերոն․, տող 59—60 = «Ած պարիսպ Բաբելոնի զայն յէ– ա–ըյէնակէ», Եւսեբ․, Քրոն․ Ա, էջ 92․ «եղեցի այսուհետեւ ժամանակագրութիւնս, որ առաջիս կայ, զայս յէ– ա–ըյէնակէ», անդ, էջ 168․ «գրէ զայս յէ– ա–ըյէնակէ», անդ, էջ 177․ «եւ յայսմ վայրէ անդրէն դարձուցեալ զբանն՝ գրէ զայս յէ– ա–ըյէնակէ[ն]», անդ, էջ 362․ Համմատէ Թոռնեան, Հայերէնի ընթերցուածք, Ա, էջ 356։

4․ «Եւ այսպէս գ–ծայըէն (fiunt) միանգամայն հնոյ ուրէնադրութեան գիրք քան եւ երկու ընդ ամենայն», Յերոն․, տող 110—112 = «Եւ ի հնգետասաներորդ ամէն Տիբերեայ մինչեւ ցհուսկ յետին պաշարումն Երուսաղէմի ․․․ գ–ծայըէն ամք խբ», Եւսեբ․, Քրոն․ Ա, էջ 195,

որ քիչ մը վեր կը գրուի «Ընդ այսուհետեւ յԵպիփանէս Անտիոքայ մինչեւ ի հնգետասաներորդ ամն Տիբերեայ՝ ամք մա„, հմմտէ նաեւ էջ 196, 201, 266—267, 360։ — Քան եւ երկու գիրք աստուածակերտ ժամանակագրութեանն . . .„, Ցերոն., տող 52—53. «Ու երկրորդ ժամանակագրութեան առնեն սկիզբն„, տող 70—71, «եւ երրորդ դարձեալ ժամանակագրութիւն Եբրայեցւոց„, տող 92—93 եւ այլն = «զի յետ որդեծնութեանն՝ ըստ եւթանասնիցն ժամանակագրութեան նոյն ձեւ թիւն ողջ եւ ի Հեբրայեցւոց ընթերցուածին գտանի„, Եւսեբ., Քրոն. Ա, էջ 125 = καὶ τὸν μετὰ τὴν παιδοποιίαν ἅμα συνοφόμενον τὸν ἀριθμὸν σώζοντα κατά τε τὴν τῶν Ἑβραίων ἀνάγνωσιν.

5. «Բայց յայսմ ազգին(ս) ասիցէ ոք պատմութիւն ժամանակական, որ Գիրք Մնացորդաց անուանին„, տող 103—106, Ցերոնիմեայ բուն բնագիրը ունի այս տեղ պարզապէս Chronicon = «Ու նիւթս ի նոցանէ ամենեցունց ժողովեալ անձին՝ ի քրօնիկոն ժամանակական կանոնսն փոխեցայց„, Եւսեբ., Քրոն. Ա, էջ 9, ուր կը ծանօթագրէ Աւգերեան ex his duabus vocibus, secunda armena videtur accom-

modata ab interprete nostro, ut primam vocem gr. Χρονικόν expliceret, utraque enim est temporalis, ծանօթ. 3:

6. "Արդ որպէս ցուցաւ թէ քսան եւ երկու նշանագիրք են, որովք ամենայն ինչ եբրայեցերէն բարբառով յառաջ եկեալ հատանի, նոյնպէս...", տող 49—51 = ...et eorum initiis vox humana comprehenditur, ինչպէս ըսինք, այս անորոշ հատուածն ալ ունի իր համապատասխան տեղիքը Եւսեբեայ թարգմանութեան մէջ "եւ արդ լաւ լեցի ի վերայ հասանել փոփոխմանց բանից առ անցնիւր (այսպէս GE, իսկ տպ. առանցն) ի նոցանէ, զի յամենեցունց ընդ միմեանս կշռեալ համեմատութենէն՝ ճշմարիտ գիւտն հատանիցի", Ա, էջ 113 = ...ut ex omnibus ad invicem comparatione facta, perpendatur, ac vera inventio comprehendatur: ՀԲ. կը մեկնէ Եւսեբեայ խօսքը "գտանիլ, ըմբռնիլ, բովանդակիլ ի միտս" (Բ; էջ 50), Թոռնեան կը դիտէ "շատ ցանցառ է՝ չէզոք բայէ մը անոր կրաւորականը հանել, ինչպէս հոս հատանէտէն հատանիմ. այլ կ'ըսուի "ի գիւտն լեցէ հատա-

նէլ„, Հատընտ. Ընթերց. Ա, էջ 352, ծանօթ. 21. տես Զաըլխեան-Այտըննեան, Քերականութիւն Հայկազնեան լեզուի, 9. տպ., էջ 201—202. Կարստ Էջմիածնի (E) եւ Երուսաղէմի (G) օրինակներուն յեցած կը թարգմանէ „so möchte es gut sein, nachzugehen den Abweichungen der Worte bei jedem Einzelnen von ihnen, damit aus der abwägenden Vergleichung der sämtlichen miteinander der richtige Befund hervorgehe“, Karst, Eusebius Werke, Die Chronik, Leipzig 1911, էջ 37։

7. “Ըռանէն եւ հինգ Տափէնագրութիւնս„, Ցերոն., տող 95 = “ի Մանեթեանց յեգիպտական յիշատակացն, որ յերիս տոմարս արար Տափէնագրութիւնս„, Քրոն. Ա, էջ 200։

8. “Քսան եւ երկու նշանագրաւք վարին Եբրայեցիք ... եւ ոչ միայն նոքա, այլ եւ Սամարացիք զմովսիսեան հինգ աւրինաւորս քսան եւ երկու նշանագրաւք գրեն„; տող 3—11 = “Նաեւ նշանագիրք իսկ գրոցն Եբրայեցւոց՝ այլազգ առ Հրեայս գտանին եւ այլ գունակ առ Շամրտացիս...

ապա ուրեմն չգոյր ինչ ի միջի նոցա այլակերպութիւն մինչեւ ի նշանագրացն փոփոխումն„, Եւսեբ., Քրոն. Ա, էջ 114, Հետաքրքրական է գաղափարներու ալ նոյնութիւնը այս տեղ, ինչպէս նաեւ սա տողերու մէջ “Եզրի դպրի եւ աւրինապատմի յետ առնլոյ զԵրուսաղէմ եւ վերստին տաճարին ի Զաւրաբաբելէ շինելոյ, այլ նշանագիրս եբրայեցւոց ցուցանել„, տող 13—17 = “Առ սովաւ Եզր Եբրայեցւոց սուրբ գրոց գրագէտ ճանաչէր, զորմէ ասի զամենայն աստուածեղէն գիրս վերստին յիշել եւ աւանդել Հրէիցն նորանկար Եբրայեցւոց նշանագրաւք„, Քրոն. Ա, էջ 190։

9. Կը յիշեմ ի վերջոյ աներեւոյթի գործածութիւնը. “Իսկ բազումք պնդէին որպէս թէ ճշմարիտ իցէ բանն Եզրի դպրի... այլ նշանագիրս Եբրայեցւոց ցուցանել„, Ցերոն., տող 12—17. “Հինգ գիրքն առ ի բազմաց կարծեցան լինել կրկին„, տող 46, որ շատ սիրուած ձեւ մըն է Եւսեբեայ Ժամանակագրութեան մէջ, տես միայն, Ա, էջ 18, “ասէ զԲաբիղացւոց երկիրն հաստատել ի վերայ Դկղաթ գետոյ եւ Արածանւոյ ընդ մէջ անցանել... եւ ի

խաղս եւ ի շամբս գետոյն արմատոց ինչ ուտելեաց գտանել„ եւ այլն։

Փոքրիկ հատուածի մը մէջ երեւան եկող լեզուական նոյնութիւններու այսքան առատութիւնը բաւական պատճառ է, կը կարծեմ, Նորայրի հետ ընդունելու թէ յառաջաբանութեան թարգմանիչը նոյն է Եւսեբեայ ժամանակագրութեան թարգմանչին հետ։ Անհիմն է հետեւաբար Տէր-Մովսէսեանի կարծիքը, որ թէեւ կ՚ընդունի թէ յառաջաբանութեան թարգմանութիւնը լատիներէնէ չէ, սակայն հակառակ Գալէմքեարեանի կը դնէ թարգմանութեան ժամանակը ութերորդ դարէն յառաջ եւ կը սպասէ Ցերոնիմեայ գրութեան ամբողջական գիւտին, որպէս զի կարենայ որոշակի արտայայտուիլ այս մասին[1]։

Բառաքննութիւն: — Հայկազեան Բառգիրքը օգտուած է յառաջաբանութենէս եւ յիշած տասնեակ մը բառեր, բայց այնպիսի խառնակ եւ անորոշ տեղեկներով, որ գործածողը չի կրնար գոհացուցիչ գաղափար մը կազմել թէ մէջ բերուած բառը ո՛ր դարու մէջ զետեղելու է։ Բացի Նխ. Ըգ. (Ժամանակական, Ա, էջ 829.

[1] Исторія перевода եւ այլն, էջ 274։

խեցխեղեփ, Ա, էջ 942. խմբագիր, Ա, էջ 968. կաթնակեր, Ա, էջ 1032) եւ Նխ. ա. Ըգ. (նկարագրոշմ, Բ, էջ 429. չորեքգրեան, Բ, էջ 578) համառօտագրութիւններէն՝ կան նաեւ հետաքրքրական յաջորդ տեղիքները, որոնց մասին կասկածով արտայայտուելու ենք բնականաբար. «Նշանագիր» (Բ, էջ 424) եւ «օրինապատում» (Բ, էջ 1035) բառերու տակ ՀԲ. կը գնէ Նփր. Ըգ. համառօտագրութիւնը, նոյնպէս նաեւ «սրբագիր» (Բ, էջ 758) բառին տակ կատարեալպէս նոյն երկու նախադասութիւններ կը յիշատակէ՝ մին յուլ. ա. Ըգ. բոց հեյոն. եւ միւսը Նփր. ա. Ըգ. տեղիքներով, իսկ «կաթնակեր» բառին տակ յիշելէ ետքը Նխ. Ըգ.՝ կը յաւելու «որ է Թէկ. Ըգ. վերիպակաւ գրի գկաթնաբալս», Ա, էջ 1032։

ՀԲ. յառաջաբանութեանս մէջ գործածուած նոր ու ցանցառ բառերը յառաջ բերած եւ մեկնած է արդէն, առաւելագոյն լուսաբանութեան համար միայն է որ հոս կը շօշափեմ վերստին այս բառերը՝ Ցերոնիմեայ բուն բնագրին բառերուն հետ համեմատութեան դնելով եւ ձեռագրական տարբերութիւններու մէջէն, այս համե-

մասութեամբ, վերջնական ընտրութիւն ընելով։

1․ Աստո–ածանչերք։ — «Նոյնպէս քսան եւ երկու գիրք աստո–ածանչերք գումարութեանն թուին ընդ ամենայն ըստ նշանագրացն, որ․․․», տող 52—54․ լատ․ այլապէս ita viginti duo volumina supputantur, quibus…; Հարազատ այս ընթերցուածը, որ չէ առնուած Հβ․ի մէջ, B օրինակը կը խեղաթիւրէ կարդալով «աստո–ածանչերց», որ թէեւ նմանապէս դասական է (Հմմտէ Ագաթ․, աստո–անչերց փառք, էջ 147, աստո–ածանչերց տեսիլ, էջ 159, 382 աստո–ածանչերց յայտնութիւն, էջ 163), սակայն եւ այնպէս չի յարմարիր հատուածիս իմաստին․ Նոյնօրինակ ուրիշ եղծում մը կը մատնանշեմ Ագաթ․էն, ուր «աթոռ զարմանալի, աստո–ածանչերք, սքանչելի հրեղէն», էջ 385 β օրինակին մէջ կը փոխուի եւ կը կարդացուի «աստո–ածանչերց»․ ուրիշ օրինակներ յիշած եմ Բառաքննական դիտողութիւններուս մէջ, Բ, էջ 84․ Նկատել կու տամ թէ սորեւ Տաթեւացիէն յառաջ բերուած հատուածին մէջ ալ կայ զարմանալիօրէն այս ձեւը եւ միեւնոյն պարագայի տակ

«Նոյնպէս եւ ԻԲ գիրք գումարեալ առ-փոստաձակէրպ գրոց»:

2. Դաբրէիամին: — «Դատական մանր բնագիրներ եւ ձեռագրական համեմատութիւններ», աշխատասիրութեանս մէջ դիտել տուած եմ թէ Ն փ ր ե մ ի թարգմանչին գործածած «Իէբրամին»՝ անիմաստ բառը (Ա, էջ 463 եւ 495) սրբագրելու է «Դի-բրամին»՝ բառական «վարուց աւուրց» նշանակութիւնը ձեռք բերելու համար, էջ 46: Ուղղագրական այս փորձը վերջնականապէս կը հաստատուի Ց ե ր ո ն ի մ ո ս թարգմանչին տառադարձած «Դաբրէիամին» բառով. «եւթներորդ ‹Դաբրէիամինն› (այսպէս BFG, իսկ E դաբրեովմինն, A դդաբրեովինն), որ նշանակէ զբանս աւուրց», տող 102—103 = Septimus Dabre (կամ նաեւ Dibre) haiamim, id est verba dierum, կարեւորութիւն չեմ տար CD օրինակներուն տուած «Դիբրէ հայամիմ» ձեւին, թէպէտ եւ ամենամերձ ըլլայ լատին ընթերցուածին, որովհետեւ շատ կամայական է այստեղ անոնց ընթերցումը. «զբանս աւուրց, որ է Գիրք Մնացորդացն, զոր նոքա Դիբրէ հայամիմ կոչեն»: Եբրայական մի եւ նոյն բառը, տող 47 կը գոր-

ծածուկ տեռականաձեւ AF «դաճարէով-մայն», B «խաճարէմվայն», C «դաճարէա-մեայն», D «դաճարախմենայն», E «Գ՝աճՈԷԷէ-ամենայն», տարբերակներով, որոնց մէջէն Dին ընթերցուածը կ'ընտրեմ եւ կը ներմուծեմ բնագրին մէջ, որովհետեւ եբրայական հնչումին մերձ լաւագոյն ձեւն է։ Եւսեբեայ Եկեղեցական պատմութեան մէջ գործածուած է բառս ուրիշ մէկ ձեւով. «իսկ դպրութիւն Թագաւորաց երկուք որ կոչին Անախադպրիամէն, այսինքն բանք աւուրց», էջ 471, որուն մասին Preuschen շատ մութ ու անորոշ կ'արտայայտուի եւ կը գրէ Anachadpriamen. Das Wort ist ganz verdorben. Im Syrischen stand ܒܚܕ ܕܒܪ̈ܝܡܝܢ ܡ̈ܠܐ, der Arm. nahm ܒܚܕ (ἐν ἑνί) als Teil des hebräischen Titels und transkribierte die Worte mit, die dann später so entstellt wurden[1]. Այլուր Եկեղեցական պատմութեան թարգմանիչը ունի սովորական «Եւ դպրութիւն Մնացորդաց երկու», էջ 307 = ܣܦܪ ܕܒܪ̈ܝܡܝܢ ܬܪ̈ܝܢ, Wright and

[1] Preuschen, Eusebius Kirchengeschichte, Buch VI und VII. Aus dem Armenischen übersetzt. Leipzig 1902, էջ 32։

M[c] Lean, The ecclesiastical history of Eusebius in Syriac, Cambridge 1898, էջ 240։

3. Խեցխեղէփ։ — “Զմովսիսեան հինգ աւրինաւորսն քսան եւ երկու նշանագրաւք գրեն, կերպարանաւք միայն եւ խեցխեղէփա—+ այլափոխեն„, տող 12, ABEF օրինակներու այս ընթերցուածին CD կը ներկայացընեն “խեցեղէփա—+„ ընթերցուածը, որ ամէն պարագայի մէջ սխալ է, քանի որ Մանդակունին արդէն գործածած է “խեցխեղէփա—+ կիսանուն եւ բեկբեկելով„. ՀԲ. բառս կը մեկնէ χαρακτήρ, nota, lineamentum, character. բեկոր կամ կոտոր տառից իբրու դոյզն նիշ... գրակէս, գրախեց, նշանախեց, նշանագիր (Ա, էջ 942). լատին բնագիրը խնդրական այս բառի դէմ ունի figuris tantum et apicibus discrepantes, այս համեմատութեամբ պէտք է ՀԲ.ի տուած մեկնութիւնները մանաւորել եւ գրել միայն “նշանախեց„ համմատէ “Յովտ մի, որ նշանախեց մի է„, Մատթ. Ե, էջ 18 = iota unum aut apex, “քան յաւրինացն միոյ նշանախեցէ անցանել„, Ղուկ. ԺԶ = quam de lege unum apicem cadere.

4. **Խմբագիր**: — «Ոչ եթէ զայլ եւ այլ ազգաց թագաւորութիւնս նշանակէ խմբագիրն, այլ զմիոյ զիսրայելականէն», տող 84—86 = non enim multarum gentium describit regna, sed unius israelitici populi, այս ընթերցուածը բաւական չէ որոշելու թէ ինչ իմաստով առնուած է այս տեղ «խմբագիր» հազուագիւտ բառը. ՀԲ. կը մեկնէ «գիրք՝ ուր համախմբեալ են պատմութիւնք ազգի միոյ ողջոյն, որպէս գիրք թագաւորաց» (Ա, էջ 948), ու բեմն συγγραφή կամ συγγραφία բառերուն համանիշ կ'ընդունի ՀԲ. խնդրական բառը, մինչ կարելի է ըմբռնել նաեւ, թերեւս առաւելագոյն հաւանականութեամբ իբրեւ συγγραφεύς.

5. **Կաթնակեր**: — «Առ ի խրատելոյ զտակաւին զմատաղագոյն եւ զկաթնակեր բարս առն արդարոյ», տող 56—58, այս է սկզբնական հարազատ ընթերցուածը, որովհետեւ լաւագոյնս կը համապատասխանէ լատին բնագրին ներկայացուցած բառին. tenera adhuc et *lactens* viri iusti eruditur infantia. **Կ** եւ **Ս** տառերու նմանութենէն է որ յառաջ եկած է E օրինակին «**զկաթնասէր** բարս» ընթերցուածը (տես

նաեւ «Կոհեղէթ», տող 99, որ ուրիշ օրինակներու մէջ եղած է «Սեհելէթ»), իսկ ՀԲ.ի յիշած անըմբռնելի ՄԷՀՆ. ԲԳ.ի «չաբնաճարս»ը ձուլումն է «չաբնաչէր» եւ «ճարս» բառերու. CD օրինակները բոլորովին կ'աղճատեն հատուածս երբ կը կարդան «զատակաւին մատաղագոյնան եւ ղախմարն (D ղախմարսն), Ոսկանն ալ ունի վերջին այս ձեւը «եւ գեռ եւս տհաս եւ կաթնաբոյծ առն արդարոյ խրատի փխմարութեան»։

6. Յայտնութեան. — ՀԲ. Բ, էջ 322 կը գրէ. «Ծածուկ կամ ծածկոյթ յայտնութիւնք կոչին անյայտ մատեանքն արտաքոյ սովորական կանոնի սուրբ գրոց, այն է ըստ յն. ապօ՛կրիֆա». այս մեկնաբանական ծանօթութիւնը կը հայի Կիւրղի Կոչման ընծայութեան սա խօսքերուն. «Ուսումնասէր մտաւք իմասջիր յեկեղեցւոյ աստի, որ են գիրք հնոց կտակարանաց, որ են նոր կտակարանք, եւ մի ինչ փոյթ առներ զծածկոյն յայտնութեանց», էջ 68 = καὶ φιλομαθῶς ἐπίγνωθι... ποῖαι μὲν εἴσιν αἱ τῆς παλαιᾶς διαθήκις βίβλοι, ποῖαι δὲ τῆς καινῆς, καὶ μοι μηδὲν τῶν ἀποκρύφων ἀναγίνωσκε (Catech. IV, De decem dogmatibus, Migne, Pat. gr. 33,

էջ 496), "Ցայսցանէ զքսան եւ զերկու-
գիրսն ընթեռնիջիր, այլ է ծածուկ յապոկրի-
ֆոնան ամենեւին մերձեսցիս մի„, էջ 69—
70 = τούτων τὰς εἴκοσε δύο βίβλους ἀνα-
γίνωσκε, πρὸς δὲ τὰ ἀπόκρυφα μηδὲν
ἔχε κοινόν (անդ, էջ 497). յոյն ճիշդ մի եւ
նոյն բառը Ցերոնիմեայ թարգմանիչն ալ կը
հայացրնէ ճիշդ մի եւ նոյն "յապոկրիֆոն„
բառով "պարտ է գիտել յառաջելոցս, զի
որ արտաքոյ քան զայս գումարութիւն գիրք
գտանիցին, ընդ անուանեալ յապոկրիֆոնն
հարկ է համարել„, տող 118—121 = inter
apocrypha esse ponendum. Կարելի չէ
մեկնել թէ ինչպէս ἀπόκρυφος = "գաղտնի,
ծածուկ, կեղծ, անվաւեր„ բառը հայերէնի
մէջ կու տայ ուղղակի հակադրական նշա-
նակութիւն մը՝ "յապոկրիֆոն„. եւ կամ
ընդունի՞լ հարկ է որ յոյն բառը սխալմամբ
ἀποκάλυψις ընթերցուած ըլլայ։

7. Նչարադրոշմ. — "Գրեն այլա-
փոխ նչարադրոշմք (AF նշանադրոշմք,
իսկ B նշանագրէք)„, տող 8 = diversis
characteribus, "նոյնպիսիս ըստ Սա-
մարացւոցն եւ ըստ Եբրայեցւոցն հասարակ
եւ նոքա նչարադրոշմս նշանագրաց ունէին
զառաջինն„, տող 18—21 = iidem Sa-

maritanorum et Hebraeorum characteres fuerint, "Նոյնպէս նովին նշանագրաւք եւ նկարագրովք+ (A նկարագրաւք եւ նշանագրովմիւք, իսկ CD պարզապէս դրովք+) զատուցեալ է գտանել (ՀԲ. գտանել)", տող 38—40 = iisdem alphabetis et incisionibus supputantur. ՀԲ.ի գործածած "Նխ. ա. Ըգ. ըստ. յէտ." համառօտագրութիւնը անորոշ կը ձգէր բառիս դասական շրջանի պատկանումը, գիտենք այժմ թէ հինգերորդ ոսկեղէն դարն է որ պարգեւած է մեզի հազուագիւտ այս բառը իբրեւ նոյնանիշ "աղփաբետք, գիր, նկարագիր, նշանագիր" բառերու:

8. Արձագէր+. — "Երրորդ դարձեալ գումարութիւն Եբրայեցւոց, յոր զրբագիրսն կարգեն եւ այնր առաջին զՅոբ դնեն", տող 92—94, "Մարգարէիցն՝ ութ, արձագրոյն՝ ինն", տող 113, գրեթէ այսպէս նաեւ ՀԲ, որ ինչպէս վերը ակնարկեցի, հատուածս "յաջ. ա. Ըգ. ըստ Հէբրն." տեղիքով յառաջ բերելէ վերջ՝ կը կցէ "երրորդ գումարութիւն առնեն, զոր արձագէր+ կոչեն: Որպէս արձագրոյն" յառաջբերութիւնը՝ Նխր. ա. Ըգ. տեղիքով (Բ,

էջ 758)․ CD օրինակները կը ներկայացընեն «յոր եւ ուղղագրեանն կարգեն» «ուժն մարգարէից, ինն ուղղագրեանն, որ բովանդակէ տասն եւ երկու», տարբերակները, որոնք թէպէտ ոչինչ ունին հակառակ դասական հայերէնի ոգւոյն, սակայն եւ այնպէս յայտնի եղծումներ համարուելու են, քանի որ շատ կամայականութիւններու տեղի կու տան սովորաբար CD օրինակները․ տեսանք վերը «ախմար» կամայական աղճատում մը եւ վարը տարբերութիւններու մէջ պիտի տեսնենք ուրիշ ինքնակամ փոփոխութիւններ։ ՀԲ․ «ուղղագիրք» բառի ուրիշ երկու վկայութիւններ ալ կը բերէ Սոփ․ Եզր․ եւ Սոփ․ Նաւէս․ տեղիքներով, որոնք սակայն ինծի ծանօթ չեն, տես Ոսկեբ․, Պաւղ․ Բ, էջ 856—857, ուր չկայ նման հատուած մը, եւ ոչ ալ Մեկնութեանս համառօտ խմբագրութեան մէջ, հմմտէ Մատենադարանիս թիւ 42 Ձեռագիրը (Տաշեան, Ցուցակ, էջ 202 եւ 376), թղ․ 150բ—151ա։

Սովորական բառերու եւ մանաւանդ եբրայական անուններու տարբերութիւններն ու փոփոխութիւնները՝ աւելորդ կը

*համարիմ թուել այս տեղ միայն, քանի որ հրատարակութեանս ստորագրուած ծանօթութիւնները մէջ մանրամասնօրէն այդէն քննուած են եւ ընտրուած՝ նախաբնագրին հետեւողութեամբ:*

*Օրինակներ եւ բնագիրներ:* — *Ներկայ բնագիրը կազմելու համար գործածած եմ հետեւեալ օրինակները.*

A = *Մատենադարանիս Թ.* 55 *Ձեռագիրը, Աստուածաշունչ լիակատար, հին եւ նոր կտակարաններ (գրուած* 1368—1375*էն յառաջ), Թղ.* 132*ա* 133*ա*, «Յառաջաբան նախակարգեալ Ոտանաւորականաց», *հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ* 253—260:

B = *Մատենադարանիս Թ.* 71 *Ձեռագիրը (ԺԳ.—ԺԴ. դար), «Մատեան է Աստուածաշունչ հին եւ նոր կտակարանաց, ուր կան ամէն մասունք՝ նախադրութիւնք, ցանկք եւ այլն (Աւետարանք միայն կը պակսին», Տաշեան, Ցուցակ, էջ* 314—318). «Յառաջաբան նախակարգեալ Ոտանաւորականաց», *Թղ.* 133*ա*—133*բ*, *որ գրուած է նախ, որուն հետեւած սովորական* «Նախադրութիւն Ոտանաւորականաց» (*տես Զօհրապեան, Բ. հատոր, էջ* 1),

մինչ թիւ **55**ի մէջ նախ այս յառաջաբանութիւնը կը գրուի եւ կը կցուի յետոյ Ցերոնիմեայ "Նախակարգեալ"ը, տես Տաշեան, անդ, էջ 315։

C = Մատենադարանիս թիւ **47** Ձեռագիրը (ԺԹ. դար, բուն ՌՃՀԴ = 1725), որ է "Գիրք պատճառաց, յորում (որնորում) ընձեռին պատճառք եւ Նախագրութիւնք Հնոց եւ Նորոց կտակարանաց", Տաշեան, Ցուցակ, էջ 213—233։ Յառաջաբանութիւնս կը գտնուի թղ. 18բ—20բ "Սկիզբն եւ պատճառ Նախադրութեան գրոց եւ յառաջաբան Նախակարգելոյ Նախադրութեանցն", որմէ Տաշեան, անդ, էջ 215, մաս մը հրատարակած է։

D = Մատենադարանիս թիւ **305** Ձեռագիրը (ԺԸ. դար), նոյնպէս Գիրք պատճառաց թերի, որուն կցուած է ուրիշ մաս մըն ալ. "Գիրք պատճառացս միեւնոյն ձեռագրէն օրինակուած ըլլալու է, որմէ էր Թ. 47, ուստի միեւնոյն պակաս մասերն հոս ալ պակաս են, բայց գրիչը չի նշանակեր պակասորդներն, այլ միապաղաղ դրեր է՝ իբրեւ թէ ամենեւին թուղթ ինկած չըլլար գաղափար-օրինակին մէջ",

Տաշեան, Ցուցակ, էջ 733. Յառաջաբանութեանս գլխակարգութիւնն այնոյն է տառական "Սկիզբն եւ պատճառ Թագաւորութեան գրոց եւ յառաջաբան նախակարգեալ Թագաւորութեանց", Թղ. 10բ—11բ։

E = Մուրատեանի հրատարակութիւնը, "Արշալոյս արարատեան", 1867, Թ. 811, որ առնուած է "քանի մը երես հին ձեռագրէ" մը եւ "ամենայն զգուշութեամբ" ընդօրինակուած "միայն օ̣ի տեղ գործածուած ա—երը ըստ այժմեան սովորութեան օ գրելով":

F = Սուքրեանի հրատարակութիւնը, "Բազմավէպ" 1877, էջ 202—203. գիտել կու տամ թէ այս հրատարակութեան հիմը կազմած է Վենետիկի Մատենադարանին Թ. 19 "Թերի Աստուածաշունչը", Սարգիսեան; Ցուցակ, էջ 156, ուր կը ծանօթագրուի թէ Յառաջաբանիս շարունակութիւնն է "Եւ արդ պարտ է գիտել յառաջելոցս, զի որ արտաքոյ...", եւ այն հատուածը, որ Թղ. 6բ² տեղ չըլլալուն պատճառաւ՝ յատուկ նշանագրով մը՝ փոխադրուած է Թղ. 1ա¹՝ դատարկ թղթի վրայ սա դիտողութեամբ

«Թուխթդ անցուոյ, ուր նշանն է, այս՝ հետ այնոր է»։ Այս դէպքը վրիպած է Սուքրեանի ուշադրութենէն, որով իր հրատարակութիւնը թողած է անկատար։

G = Զարբհանալեանի հատուածը (տես վերը, էջ 389, ծանօթ. 4), որ առնուած է Վենետիկի «Ա. Թուանշանը կրող աստուածաշունչ գրոց օրինակէն». բոլորգիր ընտիր մագաղաթեայ քառասուն եւ հինգ թերթ, եւ իւրաքանչիւր թերթն՝ տասնուերկու թուղթ կամ քսան եւ չորս էջ. ամէն մէկ էջ ի կրկին սիւնակս բաժնուած, եւ ամէն մէկ սիւնակին վրայ յիսուն ու իրեք տողք. երեսուն եւ հինգ թերթն հին կտակարանէն եւ տասն ի նորոյն, միօրինակ գրեալ Ճարտար գրչաւ», Հայկական թարգմանութիւնք նախնեաց, էջ 129. Ցերոնիմեայ հատուածը կը գտնուի, էջ 134 «Յառաջաբան նախակարգեալ Թագաւորութեանց». ընդարձակագոյն տեղեկութիւններ տես Սարգիսեան, Ցուցակ, էջ 1—20, Յառաջաբանութեանս մասին Սարգիսեան կը ծանօթագրէ, դարձեալ շատ մութ եւ անորոշ. թղ. 11 ա Յառաջաբան նախակարգեալ Թագաւորութեանց։ Կան ի յեր-

կուս գիրս Հեբրայեցւոց զպատմութիւնն բաժանելոյ։ Զի քան եւ երկու նշանագրաւք վարին Եբրայեցիք եւ այլն։ Այս ընդարձակ Ցառաջաբանս որ կը կանխէ քան զնախադրութիւնը — ուր կարեւոր տեղեկութիւններ կը տրուին Եբրայեցւոց գրին եւ ասոր նախընթաց եւ յաջորդող գիրքերուն վրայ — կը պակսի տպագրութեան մէջ», էջ 5։

H գրով յառաջ կը բերեմ Հայկազեան Բառգրքի տարբերութիւնները։

I գրով կը նշանակեմ Մատենադարանիս Թ. 217 Ձեռագիրը, որ, Թղ. 275բ—276ա, կը յիշուին Հին կտակարանի անուններու ցուցակը եւ լուսանցագրութիւններ, այսպէս «Ծննդք. ի լուսանցն Արարածք, յերկրորդ լուսանցն Բրեսիդն: Ելք: ‖Ելեսմովթ : Ղեւտացւոց : ‖ Ղեւտիկոն : Թիւք: ‖ուխաիեդաբեր», եւ այլն. տես Տաշեան, Ցուցակ, էջ 553—554։

Բնագրական անդրագոյն եւ մանրամասն համեմատութիւններու դիւրութեան համար կը դնեմ Հայ դասական բնագրին զուգակից՝ նաեւ լատին բնագիրը, զոր արտագրած եմ Migneէն, Pat. lat. 28, էջ 593—603, եւ յետոյ կ'արտատպեմ

Ոսկանի թարգմանութիւնը "[illegible] [illegible]", որ կրնայ դիւրութիւն ընծայել համեմատութեան:

Իսկ հոս կը գտնեղեմ "Գիրք Հայցմանց" էն հատուած մը, որ յայտնապէս փոխ առնուած է Երոնիմեայ յառաջաբանութենէն եւ զոր սակայն Տաթեւացին վերածած է իր սեպհական լեզուին: Յատկապէս կարեւոր է այս հատուածը նաեւ անոր համար, որովհետեւ խնդրական "[illegible]" բառի փոխարէն կը ներկայացընէ "Մակաբայեցին" շատ հետաքրքրական ընթերցուածը, ընթերցուած մը, որ աւելի կը յատկորոշուի Սարգիսեան, Ցուցակ, Թ. 4 Աստուածաշունչի գլխաւոր Յիշատակարանին սա տողերովը՝ "Եսթերին, Յուդիթին եւ Տովբէթին, Երրորդ Մակաբայեցին" (էջ 47), զոր, ինչպէս վերը տեսանք, լատին բնագրի մէջ ալ փորձած են ներմուծել: "Ո՞րքան են եւ ո՞րք գիրք սուրբք հին եւ նոր կտակարանք" հարցումին այսպէս կը պատասխանէ Տաթեւացին.

Դարձեալ գիտելի է, զի հին կտակարանքն ամենայն՝ յերիս բաժանին. որ է

Օրէնք, Մարգարէք, Սրբագիրք: Օրէնք է Մովսէսի Ե գիրքն որ (կամ «որպէս») ասացաւ. եւ Մարգարէք ութ. որոց առաջինն Յեսու, երկրորդ՝ Դատաւորք եւ Հռութն, երրորդ՝ Բ Թագաւորութեանց եւ չորրորդ՝ Բ Թագաւորութեանց (կամ «եւ չորրորդ Թագաւորութեանց»), հինգերորդ՝ Եսայի, վեցերորդ՝ Երեմիայն, եօթներորդ՝ Եզեկիէլն, ութերորդ՝ Երկոտասան մարգարէք: Եւ երրորդ ժողովումն Սրբագիրք. որոց առաջինն Յոբ, երկրորդ՝ Դաւիթ, երրորդ՝ Առակացն, չորս՝ Ժողովողն, հինգ՝ Երգ երգոցն, վեց՝ Դանիէլն, եօթ՝ Երկու Մնացորդացն, ութ՝ Եզրին, ինն՝ Եսթերայն, որ լինի բովանդակն ԻԲ: Զի Ի երկու տառք են Ալֆափեդացն եբրայեցւոց. եւ ԻԲ գլխաւոր արարածք, նոյնպէս եւ ԻԲ գիրք գումարեալ աստուածակերտ գրոց: Իսկ Սիրաք եւ Իմաստութիւնն եւ Յուդիդն եւ Տուբիդն եւ Տուբիայն եւ Մակաբայեցիքն եւ Կտակքն եւ այլք չեն յայսմ համարի. այլ ընկալեալ են ի կարգս աստուածաշունչ գրոց:

Տաթեւացւոյ այս համառօտը (տես «Գիրք Հարցմանց երից երանեալ սրբոյ հօրն մերոյ Գրիգորի Տաթեւացւոյ», Կ. Պոլիս,

1729, էջ 450—451) *արտատպած է* Տէր-Մովսէսեան (Исторія перевода *եւ այլն* էջ 260–263) *«Ղազարայ Բաբերդցւոյ» ընդօրինակած Էջմիածնի Թ.* 179 (*Կար. Թ.* 173) *ուշագրաւ ձեռագրէն՝ «Գրիգորի Եռամեծի որ այսպէս շարահիւսեալ է զհին եւ զնոր կտակարանս» գլխակարգութեամբ, նոյնպէս Սարգիսեան* (*Ցուցակ, էջ* 28—29) *միեւնոյն խորագրի ներքեւ հրատարակած է հատուածս իբրեւ «Վանական Վարդապետէն յօրինուած հին եւ Նոր Կտակարանաց գրքերու պատճառաբանեալ ցանկը», որ Տաշեան Ցանկի մէջ* (*եր.* 1129) *Վանական Վ.ին վերագրուած գրուածոց շարքին մէջ կը պակսի»:*

Վասն ի քսան եւ յերկուս գիրս առ ի Հեբրայեցւոց զպատմութիւնն բաժանելոյ:

Զի քսան եւ երկու նշանագրաւք վարին Եբրայեցիք, Ասորւոց եւ Քաղդէացւոց լեզուն նշանակէ. քանզի նոքա յոլովագոյն մաւտ են յԵբրայեցւոց բարբառն եւ զոյգ նշանագրաւք վարին բարբառեալ նոյնպէս, բայց գրեն այլափոխ նկարագրոշմիւք: Եւ ոչ միայն նոքա, այլ եւ Սամարացիք զմովսիսեան Հինգ աւրինաւորս քսան եւ երկու նշանագրաւք գրեն, կերպարանաւք միայն եւ խեցխեղեփաւք այլափոխեն: Իսկ բազումք պնդին որպէս թէ ճշմարիտ իցէ բանն՝ Եզրի դպրի եւ աւրինապատմի յետ առնլոյ զԵրուսաղէմ եւ վերստին տաճարին ի Զաւրաբաբելէ շինելոյ այլ նշանագիրս Եբրայեցւոց

1 ABCEFG ի յերկուս, D երկու. — CD Հեբրայեցւոցն: — 2 A զպատմութիւնս, CDE զպատմութիւնն: — 3 C համառօտագրութեամբ "ի. եւ. բ. նշանագրօք", նոյնպէս D "իբ. նշ.": — 4 CE եբրայեցիքն. — CD ասորոց. — A քաղդեացւոց: — 5 A լեզուն նշանակաւ, B լեզու նշանակաւ, D չիք "լեզուն — յեբրայեցւոց", F լեզուին նշանակաց. — B քան զինք յոլ., C քան զնոսա յոլով: — 6 C չիք "մաւտ են". — B յեբրայեցոց: — 7 A բարբառել, B բարբառեալք. — A նոյնպես, B նոյնապէս: — 8 AF

# HIERONYMI PROLOGUS GALEATUS

Viginti et duas litteras esse apud Hebraeos, Syrorum quoque lingua et Chaldaeorum testatur, quae Hebraeae magna ex parte confinis est. Nam et ipsi viginti duo elementa habent eodem sono, sed diversis characteribus. Samaritani etiam Pentateuchum Moysi totidem litteris scriptitant, figuris tantum et apicibus discrepantes. Certumque est Esdram scribam, legisque doctorem, post captam Hierosolymam et instaurationem templi sub Zorababel, alias litteras reperisse quibus nunc utimur, cum ad illud

---

նշանագրոշմիւք, B նշանագրիւք: — 9 ABF չէք "նոքա", E եւ ոչ միայն, այլ եւ. — C զմովսեսն, D զմովսէսեան, E Եւ զմովսիսեան: — 10 ABF աւրինաւորն, C ե. գիրքն, D չէք: — 11 CD վարեն, փինկ "գրեն"ի: — 12 CD խեցեղեփաւք. — E այլափոխիկ: — 13 CD դնդին (C գրած է նախապէս "պնդին", յետոյ ջնջած "պ"ն եւ վերադիր գրած "դ", E պնդէին. — E ի ճշմարիտ քանս, F քան: — 14 D աւրինապետի. — AB առնելոյն: — 15 A ի Զաւրաբաբելէ; E Զաւրաբաբելի: — 16 D շինելոց. — E նշանագիր: —

ցուցանել, [թող զառաջինսն] որովք մինչեւ ցայժմ վարին։ Քանզի նոյնպիսիս ըստ Սամարացւոցն [եւ ըստ Եբրայեցւոցն] հասարակ եւ նոքա նկարագրոշմն նշանագրաց ունէին զառաջինն։ Նա եւ ի գիրս Թուոց նոյն քան եւ երկու նշանագիրք գտանին, որ խորհրդեամբ զղեւտացւոց եւ զքահանայից ցուցանեն զգումարութիւն։ Նա եւ զչորեքգրեան զանուն տեառն ուրեք ուրեք ի յունարէն գիրս տակաւին եւ այսաւր ի հին աւրինակս գրեալ գտանեմք։ Նոյնպէս եւ զսաղմոսն զերեսներորդ վեցերորդն եւ զհարիւրորդ տասներորդն (եւ զհարիւրորդ մե-

---

16–17 CD ցուցանել եբրայեցւոց. — B զառաջինս, CD զառաջինն։ — 17–18 B մինչ ցայնժամ, E որովք նոքա մինչեւ ցայժմ, F մինչեւ ցայնժամ վարէին. — D նոյնպիսիւ, E նոյնպէս իսկ։ — 19 AB սամարացւոց. — [ ] ի մէջ առնուած բառերուն հարազատութեան վրայ կը տարուիմ կասկածիլ, A ի մէջ չկան արդէն, B “ըստ սամարացւոց եւ„ էն ետքը բաց տեղ մը կը ձգէ եւ կը շարունակէ “հասարակ եւ նոքա„, E ըստ սամարացւոցն եւ ըստ եբրայեցւոց, F ըստ սամարացւոցն եւ եբրայեցւոց։ — 20 CD նկարագրոշմ. — A ունին։ — 21 C նայ եւ. — F ի գիրսն. — CDE թուոցն։ — 22 AB նշանագիրս, E նշանագիրք ի գրին գտանին, F նշանագիրքն գրին գտա-

usque tempus iidem Samaritanorum et Hebraeorum characteres fuerint. In libro quoque Numerorum haec eadem supputatio, sub Levitarum ac sacerdotum censu, mystice ostenditur. Et nomen Domini tetragrammaton in quibusdam graecis voluminibus, usque hodie antiquis expressum litteris invenimus. Sed et Psalmi trigesimus sextus, et centesimus decimus, et centesimus undecimus, et centesimus octavus decimus, et centesimus quadragesimus quartus, quanquam

---

նին։ — 22—23 B *խորհրդեամբն*, CD *խորհրդիւ*. — B *զղեւտացւոցն եւ զքահանայից*, CD *զղեւտացւոցն եւ զքահանայիցն*։ — 24 E *չորեքգրեան*։ — 25 ACD *անուննն*, BF *զանուննն*։ — 26 B *գիրս*. — E *տակաւին եւ Ասորի հին*։ — 26—27 "*ի հին աւրինակս* = antiquis litteris։ — 27 E *գտանիմք*, B *կտանեմք*։ — 27—28 A *նոյն եւ (գրի մը տեղ բաց ձգուած) սաղմոսն*, B *նոյն ի սաղմոսն*, CD *նոյնպէս եւ ի սաղմոսն*, E *նոյնպէս եւ ի սաղմոսն*, F *նոյնպէս եւ զսաղմոսն*։ — 28 E *զերեսներորդն եւ զվեցերորդն*, AB *վեցերորդ*, CD "*վեցերորդն*„*ի կը կցեն զայն տեղի որ սաէ. Մի նախանձիր ընդ չարս*։ — 28—29 ABF *չէք* "*զհարիւրորդ տասներորդն*„, E *զհարիւրորդն*

տասաներորդն) եւ զհարիւրորդ ութեւտասաներորդն եւ զհարիւրորդ քառասներորդ չորրորդն Թէպէտ եւ այլափոխ չափովք գրեալ տեսանեմք, սակայն նովին Թուով նոցին նշանագրաց կարգեալս եւ եդեալս գտանեմք: Նա եւ զՈղբսն Երեմիայի եւ զԱղաւԹս նորա, եւս եւ զմաւտ ի կատարած առակացն Սողոմոնի՝ յորմէ վայրէ ասէ եԹէ Կին ժրագլուխ ո՛ գտանիցէ, նոյնպէս նովին նշանագրաւք եւ նկարագրոշմիւք զատուցեալս է գտանել: Եւ հինգ գիր առ ի նոցանէ կարծի Թէ կրկին իցէ՝ քափն, մեմն, նունն,

---

եւ զտասներորդն, իսկ CD զ. ճ. երդ. ժ. երդն (D ճ. երրդն. ժ. րդն.) զայն որ ասէ. խոստովան եղէց (D եղեց) քեզ տէր բոլորով սրտիւ իմով ի խորհուրդս ուղղոց, ի ժողովս մեծ են: — 29—30 ( )ը չկայ ոչ մէկ ձեռագրի մէջ, լատինը սակայն ունի et centesimus undecimus: — 30—31 A զհարիւր ութեւտասներորդն, B զհարիւրորդ ութու. ժերորդն, E պարզապէս “զութուտասաներորդն„, F զհարիւրորդ ութուտասաներորդն, CD զ. ճ. երդ, ը. եւ. ժ. երդն (D զ. ճ. երրդն. ը. ու. ժ. երդն) զայն որ ասէ. երանեալ են ամբիծք ի ճանապարհի: — 31—32 E եւ զհարիւրորդն, եւ զքառասներորդն եւ զչորրորդն, CD եւ զ. ճ. երդ քառասներդ չորրդն (D եւ զ. ճ. երրդն, քառասներրդ չորրդն) զայն բան որ ասէ

diverso scribantur metro, tamen eiusdem numeri texuntur alphabeto. Et Ieremiae Lamentationes et Oratio eius, Salomonis quoque in fine Proverbia, ab eo loco in quo ait: Mulierem fortem quis inveniet? iisdem alphabetis vel incisionibus supputantur. Porro quinque litterae duplices apud Hebraeos sunt, caph, mem, nun, pe, sade, aliter enim per has scribunt principia medietatesque verborum, aliter fines. Unde et quinque

---

բարձր առնեմ զքեզ աստուած իմ եւ թագաւոր իմ եւ օրհնեմ զանուն քո (D չիք "քո): — 32 A թեպետ այլափոխք, CD այլ չափովք, E այլափոխ չափով. — E տեսանեմք, CD գրեալ են: — 34 CD նշանագրացն. — D չիք "եղեալս, E որ կարգեալս են: — 34—35 տեսանեմք: — 36 AE մատ: — 37 ABCD Սողոմոնի. — CD յայն բան (D բանէ) որ ասէ թէ. — AB թէ: — 38 A ոյ. — ABEF չիք "նոյնպէս. — A նկարագրաւք եւ նշանադրոշմիւք, B նշանագրաւ եւ նկարադրոշմիւք, CD նշանագրաւք եւ դրոշմիւք: — 40 E չիք "է". — H քափ յէ—. ունի "տեսանել" փխնկ. "գտանել"ի. — A ի (յետոյ վերադիր կէտով մը ջնջուած) հինգ գիրս, B հին գիրս, F հինգ գիրս: — 40—41 E կարծի առ ի նոցանէ եթէ

փէն, սաղէն. եւ այսու նշանագրաւք այլազգ ի սկզբանն յորժամ գրեն վարին Եբրայեցիք, եւ այլազգ ի միջոցի եւ այլազգ ի կատարածի։ Վասն որոյ եւ հինգ գիրքն առ ի բազմաց կարծեցան լինել կրկին. Սամուէլին, Մաղաքիմայն եւ Դաբարամինայն, Եզրին եւ Երեմիային, Հանդերձ Ողբովքն։ Արդ որպէս ցուցաւ թէ քսան եւ երկու նշանագիրք են, որովք գրեալ ամենայն ինչ եբրայեցերէն բարբառով յառաջ եկեալ հասանի, նոյնպէս քսան եւ երկու գիրք աստուածակերտ գումարութեանն թուին ընդ ամենայն ըստ նշանագրացն, որ խելամուտ առնեն ուսուցանել զԱստուածոյ եւ զազնուապաշտաւն լինելոյ, առ ի խրատելոյ

---

կրկին ի Քափն, B “երկնիցէ” փխնկ. “կրկին իցէ”ի։ — 41 B “մեծնանուն” փոխանակ “մեծ, նունն”ի, ACD նուն։ — 42 ACDF փըն, իսկ B փն. — A սադեն, E սադին. — E այնու. — CD այնու նշանագրաւք զոր ասացաքն, այլ ազգ։ — 43 E իսկ բանն, CD “այլ ազգ ի սկզբանն (D յսկզբանն) եւ այլ ազգ ի միջոցի եւ այլ ազգ ի կատարածի վարին եբրայեցիքն յորժամ գրեն”։ — 45 B առ ի բազմակարծեցան։ — 46 կրկին լինիլ։ — 47 B մալաքիմայն, C մաղաքիայն, F մաղքիմայն. — A դաբարիովմայն, B իաբարիմվայն, C դաբարեամինայն, E դաբարիովմայն, F չարագրուած

a plerisque libri duplices aestimantur, Samuel, Malachim, Dabre haiamim, Esdras, Ieremias cum Cinoth, id est Lamentationibus suis. Quomodo igitur viginti duo elementa sunt, per quae scribimus hebraice omne quod loquimur, et eorum initiis vox humana comprehenditur, ita viginti duo volumina supputantur, quibus quasi litteris et exordiis, in Dei doctrina, tenera adhuc et lactens viri iusti eruditur infantia.

---

«դաբթբեբի ամենայն»: — 48 E Երեմիայ. — E ողբօքն. — լատինը ունի Ieremias cum Cinoth, id est Lamentationibus suis: — 49 E եթէ: — 50 ABEF որով. — E «ամենայնի, փոխկ. «ամենայն ինչ»ի: — 50—51 այսպէս A (հատանի) B, CD եբրայեցի բարբառով ճանաչի, E եբրայեցերէն յառաջ եկեալ բարբառով հատանի, F եբրայեցերէն՝ յառաջ եկեալ բարբառով հատին: — 52 EF նոյնպէս եւ: — 52—53 B աստուածակերպ: — 53 AB գումարութեան, C գումարութեանցն, D գումարութեանց: — 54 E նշանագրաց: — 55—56 CD

զտակաւքն զմատաղագոյն եւ զկաթնակեր բարս առն արդարոյ։

Արդ թուեն Եբրայեցիք զգիրս Մովսիսի զայս ձեւ աւրինակի։ Զառաջինն անուանեն Բրեսիթ, զոր մեքն Արարածս կոչեմք, եւ զերկրորդն Եղլէ սմովթ, զոր մեք Ելս ասեմք, եւ զերրորդն Ո[րդի]եկրա, զոր մեք Ղեւտական անուանեմք, եւ զչորրորդն Ուաւեդաբբեր, զոր մեք Թիւս ասեմք, եւ

---

ուսուցանել զատտուծոյ (D զամենայն) պաշտաւնն առ ի խրատելոյ։ — 57 A եւ զմատաղագոյն, BH (Ա, էջ 1032) մատաղագոյն, CD մատաղագոյնսն եւ զախմարսն. — E զկաթնաւէր, H զկաթնաբարս։ — 59 CDE եբրայեցիքն. — B զըսգիրս. — ABEF չիք "Մովսիսի"։ — 60 A զառիննէ։ — 61 A բերսիթ, C բերէսիթ, D բերեսիթ, այսպէս Peresith կայ լատին օրինակներու մէջ ալ, եբր. בראשית. Հմմտ. Եւսեբ., Եկ. Պատմ. "Որ կոչի առ մեզ Ծննդք, առ Հեբրայեցիսն ի գլխոյ գրոց կոչի, այսինքն ի սկզբանէ", էջ 471. Հմմտ. "զի ղէ ՛ոչքանէն արար Աստուած զերկինս եւ զերկիր մէ է ոչքանէ ասէ Հեբրայեցին. այլ է գլխոյ ...է գլխոյն ասէ, արար Աստուած զերկին եւ զերկիր. զգլխոյն յոյնք ոչ զէ-ոչքանէն գիտեն, այլ կարճ ի կարճոյ" (տես ἐπὶ κεφαλαίου), Կիւր., Մեկն. Արար. (Ձեռ. Թ. 231, թղ. 3բ). Preuschen, Eusebius Kirchengeschichte, Buch VI und VII, Leipzig 1902, էջ 31 կը

Primus apud eos liber vocatur Bresith, quem nos Genesim dicimus. Secundus Elle smoth, qui Exodus appellatur. Tertius Vaiecra, id est Leviticus. Quartus Vaiedabber, quem Numeros vocamus. Quintus Elle addabarim, qui Deuteronomium prae-

---

գիտէ թէ Եւսեբեայ թարգմանիչը եբրայական բառը չէ տառադարձած: — 61 CD մեք. — BG արարածք, CD արարածք եւ ծնունդք: — 62 AG չիք «եւ». — AI ելեսմովթ, BG ելլեսմովթ (B.ի մէջ «Լ»երուն վրայ կէտ կայ), CD ելլէ եսսովթ, եբր. ואלה שמות, Համմատէ Եւսեբ., Եկ. Պատմ., «Եւք կոչին եբրայեցերէն Զմաւովթ, զի է մեկնութիւն նորա՝ Ա.յս անուանք», էջ 471. Preuschen այս առթիւ կը գրէ Hebräisch verstand der Uebersetzer nicht. Er legte sich die syrische Transkription in seiner Weise zurecht, ibid. էջ 31: — 63 CD «կոչեմք» փխնկ. «ասեմք»ի: — 63—64 A չիք «եւ զերրորդն — անուանեմք», BF որդինեկրայ, CD ուդինեկրայ, իսկ EG որդիեկրա, որ նոյնպէս վրիպակ կը թուի, լատինն ունի Vaiecra կամ Vaicra = ויקרא, Եւսեբ., Եկ. Պատմ., «իսկ քահանայից Վիկարեայ, այսինքն Եւ կոչեայց», էջ 471: — 63 E զորս: — 65 A

զՀինգերորդն Ըլլէ հադդաբարիմ, զոր մեք Երկրորդումն աւրինաց կոչեմք։ Սոքա հնգեքեան են գիրք Մովսէսի, զոր ճշմարտիւ Եբրայեցիք Աւրէնս անուանեն։

Եւ երկրորդ գումարութեան առնեն սկիզբն եւ Թուեն զգիրսն Յեսուայ որդւոյ Նաւեայ, որ առ ի Հեբրայեցւոց Յովսուէ բէն Նուն անուանի, ապա զնեն զՍոփտիմն, որ է Դատաւորացն, ի նոյն յարեն զՀռութ, զի որ ինչ ի ժամանակս Դատաւորացն եղեւ, զնոյն եւ Հռութ պատմէ. եւ երրորդ զՍա-

---

նուարեդաբբեր, B նուարէդ աբբէր, C ուայիէդաբբեր, D ուայիէդաբեր, E նուարեդդաբեր, G նուարէթաբներ, I ուիաիեդաբեր, լատ. Vaiedabber, եբր. וידבר, Եւսեբ., Եկ. Պատմ., “իսկ Թուոցն կոչէ Ամապակոտիմ„, էջ 471, համառ. ’Αριθμοί, ’Αμμεσφεκωδείμ, Eusebii Pamphili Historia ecclesiastica, ed. Laemmer, Scaphusiae, 1862, էջ 471։ — 65 A չիք “եւ„. — կը կարդամ “Ելլէ հադդաբարիմ„, ABFG դաբարիս, I դաբարիմ„, CD էլլէ հադդէ բայարիմ, լատինք Elle addabarim, եբր. אלה הדברים, Եւսեբ., Եկ. Պատմ., “իսկ Երկրորդ աւրինացն՝ Ալեդդաբերիմ, այսինքն Այս պատգամք„, էջ 471։ — 66 B կոչիմք, CD երկրորդ աւրէնս„. — CD սոքայ. — B հինգէքեան։ — 68 - 69 CD եբրայեցիք (D եբրայեցիքն) ճշմարտիւ. — C անուանեմ։ — 71 սկիզբն եւ զնեն առաջին զգիրսն Յեսուայ

notatur. Hi sunt quinque libri Moysi, quos proprie Thora, id est Legem appellant.

Secundum Prophetarum ordinem faciunt et incipiunt ab Iesu filio Nave, qui apud eos Iosue ben Nun dicitur. Deinde subtexunt Sophtim, id est Iudicum librum. Et in eundem compingunt Ruth, quia in diebus Iudicum facta eius narratur historia.

---

*որդւոյ Նաւեայ*, F *Յեսովայ*: — 72 ABE *առ եբրայեցւոց*, F *առ Հեբրայեցւոց*, CD *առ ի Հեբրայեցւոցն*: — 72—73 A *յեսուեբեն անուանեն անուն*, B *յեսուեբեն անուն անուանի*, C *Յեսովէբեն նուն անուանի*, D *Յեսովէբեննաւն*, F *Յովսուեբեն անուն անուանի*, G *Յեսուեբեն*, *եբր.* יהושעבן נון, *Եւսեբ.*, *Եկ. Պատմ.*, “*իսկ Յեսու որդի Նաւեայ՝ Յեսուաբնոն*„, *էջ* 471: — 73 ABEF *ապա զսոսթիմն*, *չէք* “*դնեն*„, CD *եւ դնեն երկրորդ զսուսթիմն* (D *զսոսսթիմն*), G *Զսութիմն*, *լատ.* Sophtim, *որուն վրայէն ուղղած եմ Հայերէնը*, *եբր.* שפטים, *Եւսեբ.*, *Եկ. Պատմ.*, “*իսկ Դատաւորք եւ Հռութ առ նոսա կոչի Նաեսսփատիմ*„ (?), *էջ* 471, Preuschen *կը տառադարձէ* Naeosphatim, *էջ* 32: — 74 B *յարէն*, CD *ի նոյն յարեն եւ զՀռութ*, E *զխռութ*, *զոր ինչ*: — 76 ABEF *չէք* “*զնոյն եւ Հռութ*„. —

*մուէլ, զոր մեք առաջին եւ երկրորդ Թագաւորութեանցն կոչեմք, եւ չորրորդ զՄաղաքիմն, որ է Թագաւորութեանց, որ յերրորդում եւ ի չորրորդում Թագաւորութեանցն կատարի: Բայց առաւել ճշմարտագոյն է Մաղաքիմ՝ այսինքն է Թագաւորաց կոչել քան զՄաղաքովթն, որ նշանակէ Թագաւորութեանց, քանզի ոչ եթէ զայլ եւ այլ ազգաց թագաւորութենէ նշանակէ խմբագիրն, այլ զմիոյ զիսրայէլականէն, որ ի վերայ երկոտասան ցեղէցն սահմանեալ էր, հինգերորդ զԷսայեայն, վեցերորդ զԵրեմիային, եւթներորդ զԵզեկիէլին, ութերորդ զերկոտասան Մարգարէիցն, զոր նոքա Թարէասարն կոչեն:*

---

CD *եւ երրորդ զգիրքն Սամուէլի դնեն:* — 78 A *համարեմք*, B *համարիմք*, CD *թագաւորութիւն կոչեմք*, EF *յառաջին եւ յերկրորդ* (E *յերրորդ*) *թագաւորութեանցն* (E *թագաւորութեանց*) *համարիմք:* — 78 B *չիք* “*եւ չորրորդ*„: — 79 ABEF *մաղաքիմ*, CD *մալաքիմն*, I *մաղաքիմն*, *եբր.* מלכים. — AE *թագաւորութեանցն*, B *որ թագաւորութեանց:* — 80 AB *չորրորդում* (B “*ի չորրորդում*„, *յետոյ* “*ի*„ *վրայ դրուած է կէտ*), E *թագաւորութեացն*, FG *թագաւորութեանց*, CD *զոր երրորդ եւ չորրորդ թագաւորութիւն կոչեմք*, *լատ. ունի* Regum = *թագաւորաց:* —

Tertius sequitur Samuel, quem nos Regnorum primum et secundum dicimus. Quartus Malachim, id est Regum, qui tertio et quarto Regnorum volunine continetur. Meliusque multo est Malachim, id est Regum, quam Malachoth, id est Regnorum dicere; non enim multarum gentium describit regna, sed unius israelitici populi qui tribubus duodecim continetur. Quintus est Isaias. Sextus Ieremias. Septimus Ezechiel. Octavus liber duodecim Prophetarum, qui apud illos vocatur Thare asar.

---

82 ACD *չիք* “*է*„: — 84 B *թագաւորութեան*, CD *որ է նշանակ թագաւորութեանց, որ է թագաւորաց* (D *թագաւորութեանց*): — 84 E *ազգեաց թագաւորութենէ*, AF *զթագաւորութենէ*, B *զթագաւորութեան*, CD *ազգաց նշանակէ*: — 86 AF *զիսրայելականէն*, CD *զիսրայէլացւոցն*: — 86—87 CD *զերկոտասան ցեղիցն պատմեն զսահման*: — 88 A *զեսայեն*, B *զեսայեան*, E *զեսայայն*, CD *զեսայեայ մարգարէութիւնն դնեն*: — 88—89 B *զերեմիեային*, ABF *զեզեկիելին*: — 90 A *մարգարեիցն*. — ABEF *չիք* “*նոքա*„. — AE *թարեասարն*, CD *թարէասրն*: —

Եւ երրորդ դարձեալ գումարութիւն Եբրայեցւոց, յոր զսրբագիրսն կարգեն եւ այնր առաջին զՅոբ դնեն, եւ երկրորդ զԴաւիթ, առնեն եւ հինգ մատենագրութիւնս, առաջին զԹուոցն գիր Թուեն, երկրորդ զՍողոմոնին, երրորդ զԱռակացն, զոր նոքա Մասաղովթ կոչեն, եւ չորրորդ զԵկղեսիաստէսն, զոր նոքա Կոհելէթ անուանեն, եւ հինգերորդ զԱւրհնութիւնն Աւրհնութեանց, զոր նոքա Սիր ասիրիմ կոչեն, վե-

---

92 E երրորդն, CD եւ երրորդ գումարութիւն դնեն դարձեալ զԵբրայեցւոցն։ — 93 CD յոր եւ զսրբագրեանն։ — 94 A զՅովբ, B զոբ, E եւ այրն առաջին զյով դնեն, CD դնեն զՅոբն։ — 94 A չիք “եւ„ “երկրորդ„ին քով։ — 95 “առնեն — զՍողոմոնին„ չիք ABEF. — CD եւ երկրորդն զսաղմոսն։ — 97 CD զՍողոմոնին. զճանաչելն զիմաստութիւն եւ զխրատ. A զառակաց, CD երրորդ (C երկրորդ) զառակսն, զոր սկսանի ասելով. ունայնութիւն ունայնութեան է ամենայն, զոր նոքայ։ — 98 ACD Մասաքովթ, G Մոլասովթ, եբր. משלות, հմմտ. Եւսեբ., Եկ. Պատմ., “եւ Առակքն Սողոմոնի, որ կոչի Նմղաթ„, էջ 472, զոր Preuschen կը սրբագրէ “կոչին Մղաթ„ = „Die Sprüche des Solomon, die Mlath heißen“, loc. cit., էջ 32։ — 98 C հինգերորդ, D հինկերորդ, փոխկ. “չորրորդ„ի։ — 98—99 այսպէս կը կարդամ, A ունի

Tertius ordo Hagiographa possidet. Et primus liber incipit a Iob. Secundus a David, quem quinque incisionibus et uno Psalmorum volumine comprehendunt. Tertius est Salomon, tres libros habens: Proverbia, quae illi Parabolas, id est Masaloth appellant. Quartus Ecclesiasten, id est Coheleth. Quintus Canticum canticorum, quem titulo Sir assirim prae-

---

զեկելիաստեան, B զեկղի աստէն, C զեկէլէսիաստէսն, D զեկելիսիաստէսն, E զեկելեսիաստին, F զեկղեսիաստէն. — G եկլեսիաստէս — 99 CD նորայ. — A սեհելէթ, BF սեհեղէթ, G սէհէլէթ, C կոհէլէթ, DI կոհելէթ, եբր. קהלת = Coheleth, հմմտ Z s c h o k k e, Historia sacra Antiqui Testamenti, Vindobonae 1910, էջ 217, իսկ Եւսեբ., Եկ. Պատմ., "եւ Եկղեսիաստէ, որ կոչի Կոհգաթ", էջ 472, զոր P r e u s c h e n "Կղաթ" կը սրբագրէ, անդ, էջ 32, ծանօթ. 9: — 100 A հինկերորդ, BEF չիք "հինգերորդ", իսկ CD ունին "անուանեն եւ կամ արհնութիւն". — AB զարհնութեան, E զարհնութեանն. — A արհնութեանցն: — 101 AFG սերաթսիրիմ, B սիրաթ սիրիմ, E սիրաքսիմ, CD սիրասիրիմ, I մերաթմիրիմ, լատ. Sir assirim, եբր. שיר חשי ים, հմմտ Եւսեբ., Եկ.

ցերորդ զԴանիէլին, եւթներորդ զԴաբրէիովմինն, որ նշանակէ զբանս աւուրց, բայց յայտնագոյն(ս) ասիցէ ոք պատմութիւն ժամանակական, որ Գիրք Մնացորդացն անուանին, եւ զերկոսեան ողջ ապրեցուցանել ի մէնջ, ութերորդ զԵզրին, եւ այն առ ի Յունաց եւ ի Հռովմայեցւոց յերկուս գիրս բաժանեալ է, իններորդ զԵսթերայն:

Եւ այսպէս գումարին միանգամայն հնոյ աւրէնսդրութեան գիրք քսան եւ երկու ընդ ամենայն. Մովսէսին՝ հինգ, Մարգարէից՝ ութ, սրբագրացն՝ ինն: Բայց ոմանք զՀռութ եւ զԿինովթ ընդ մարգարէսն կարգեն եւ ընդ նոսին համարին, զի

---

Պատմ., ˝Երգ երգոց՝ Սէրսէրիմ„, էջ 472: — 102 A զդանիելն, BE զԴանիելին: — 102—103 A զդաբրեովլինն, BFG զդաբրեիովմինն, E զդաբրեովմինն, I դավբիովբիմ, CD դիբրէ հայամիմ = եբր. דברי הימים, Եւսեբեայ Հատուածը տեսանք վերը, էջ 403: — 104 A ասասցէ. — E զպատմութիւն: — 105—106 E անուանեն: — 102—106 այսպէս կը կարդան CD եաւթն (D եաւթնրդ) զբանս աւուրց (D աւուրցն), որ է Գիրք Մնացորդացն, զոր նոքա դիբրէ հայամիմ կոչեն: — 106 A զերկոսին, DE զերկոսեանն: — 107 BF ի մէջ, E առ ի մէնջ: — 107 CD ութերորդ գնեն

notant. Sextus est Daniel. Septimus Dabre haiamim, id est Verba dierum, quod significantius Chronicon totius divinae historiae possumus appellare, qui liber apud nos Paralipomenon primus et secundus inscribitur. Octavus Esdras, qui et ipse similiter apud Graecos et Latinos in duos libros divisus est. Nonus Esther.

Atque ita fiunt pariter veteris legis libri viginti duo, id est Moysi quinque et Prophetarum octo, Hagiographorum novem. Quanquam nonnulli Ruth et Cinoth inter Hagiographa scriptitent, et libros hos in

---

զեզրին։ — 108 ի Հռոմայեցւոց. — CD եւ է նա (D նայ) առ ի յունաց եւ ի Հռովմայեցւոց գիրս բաժանեալ։ Գնեն իններորդ։ — 110 A այսպես։ — 111 F աւրէնսդրութեանն։ — 112 F երկուքս — C ընդ ամէնն, D ընդ ամե., տես այս մասին իմ Բառաքննական դիտողութիւններս, Ա, էջ 11—14. — B Մովսէսին, E Մովսեսին, G Մովսիսին, CD Հինգ Մովսէսին, ութն մարգարէիցն, ինն սրբագրեանն, որ բովանդակի ի. եւ բ. (D իբ.)։ — 112 մարգարեիցն։ — 113 B եւ զՀռութ։ — 114—115 A զմարգարեսն, BCD զմարգարէս, E զմարգարէսս։ — 115 A Համարեն, B Համարմին,

այնու կարասցեն զՀնոյ աւրէնադրութեանն քսան եւ չորս գիրս թուել։

Եւ արդ պարտ է գիտել յասացելոցս, զի որ արտաքոյ քան զայս գումարութիւն գիրք գտանիցին, ընդ անուանեալ յայտնութիւնս Հարկ է Համարել։ Եւ Իմաստութիւնն Սողոմոնի, զոր բազումք նորա անուանեն, եւ Յեսու Սիրաքայ, եւ Յուդիթ, եւ Տուբիա, եւ Հովլիւ չեղեն արժանի կանոնի, բայց զՄակաբայեցւոց զառաջին գիրսն գտաք գրեալ եբրայեցերէն եւ զերկրորդն յունարէն, որպէս եւ անդստին ի խաւսիցն է նշանակելի։

---

CD թուեն, E կարգեն եւ Համարին. — B այնոյ։ — 116 E կարգեսցեն, CD եւ այնու կարգեսցեն (C կարասցեն) ի. եւ դ. (D իդ) գիրս թուել. — A Հնոյ աւրենադրութեան, B Հնոյ աւրէնադրութեան։ — 117 “թուել„, Հոս կը վերջանայ Սուքրեանի Հրատարակութիւնը, տես սակայն շարունակութիւնը Սարգիսեան, Ցուցակ, էջ 156։ — 118 յուսացելոյն։ — 119 B արտաքոյն։ — 120 այսպէս AG, իսկ CD “գտանիցին գիրք„, B չիք “գիրք„, E գիրք գտցեն։ — 120—121 E ի յայտնութիւնսն ի Հարկէ Համարէ։ — 121 DEG իմաստութիւն. — E Սողոմոնին։ — 122 CD

suo putent numero supputandos, ac per hoc esse priscae legis libros viginti quatuor.

... ut scire valeamus, quidquid extra hos est, inter apocrypha esse ponendum. Igitur Sapientia, quae vulgo Salomonis inscribitur, et Iesu filii Sirach liber et Iudith et Tobias et Pastor non sunt in canone. Machabaeorum primum librum Hebraicum reperi. Secundus Graecus est, quod ex ipsa quoque phrasi probari potest.

---

նոր անուաններ։ — 123 E Սիրաքա. — B «եւ Դաւիթ» փխնկ «Յուդիթ»ի, CD Յուդիդ. — A Տովբիթ, C Տովբիայ, D մովբիայ, Սարգիսեան՝ Տուբիայ։ — 124 ABG եւ Սարգիսեան Հովիւն, CD եւ Հովիւ (D Հովին) կոչեցեալ գիրք չեղեն արժանի ի կարգ ածիլ ընդ այլ կանոնեալսդ, այս մասին տես վերը։ — 125 BG եւ Սարգիսեան զՄակաբայեցւոցն. — CD գիրս։ — 126 E գիրսն գտաք Եբրայեցերէն։ — 127 B չիք «եւ»։ — G որպէս անդստին։ — 128 AE նշանակեալ, BG եւ Սարգիսեան նշանակել։

## ՋԵՐՕՆԻՄՈՍԻ ԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ ՍԱՂԱՒԱՐՏԵԱԼ

Զքսան եւ երկուս տառս գոլ առ Եբրայեցիս՝ եւ եւս Ասորւոց լեզուաւ եւ Քաղդէացւոց վկայի. որ Եբրայեցւոյն յաւէտ կողմամբ սահմանակից է։ Զի եւ նոքա զքսան եւ երկու տառս ունին նունով հնչմամբ. այլ այլատարապէւք դրոշմամբք։ Քանզի Սամարացիք զհինգ մատեանս Մովսէսի նոյնքանիւք տառիւք գծագրեն։ Կերպիւք միայն եւ նշանախեցիւք տարագծեալք։ Եւ ստոյգ է զի Եզրաս դպիր եւ օրէնսուսոյց. զկնի գերութեանն Երուսաղէմի. եւ վերանորոգութեամբ տաճարին ընդ Զօրաբաբիլիւ. զտառս այլս եգիտ՝ որովք այժմ վարիմք։ Զի մինչեւ ցայն ժամանակ Սամարացւոց եւ Եբրայեցւոց նոյնք էին նշանագիրք. ներ գրոց որ եւ թուոց. սոյն այս կարծիք ներ հանդիսի Ղեւտացւոց եւ Քահանայից հաշուում, համճարեղաբար ցուցանի։ Եւ անուն Տեառն քառատառ ներ ոմանց յունականաց մատենից. մինչեւ ցայսօր նախկնիւք գրօք արտադրեալ գտանեմք. Այլ եւ Սաղմոսի երեսներորդ վեցերորդ. եւ հարիւրորդ տասներորդ. եւ հարիւրորդ մետասաներորդ. եւ հարիւրորդ ութեւտասներորդ. եւ հա-

րիւրորդ քառասներորդ չորրորդ. Թէպէտ զանազանեալ չափու գրին. սակայն նունոյ թուոյ շարահիւսին այբուբենիւ: Եւ Երեմիայի ողբքն՝ եւ աղօթք նորուն: Նաեւ Սաղոմոնի ներ վերջում Առակաց՝ յայնմանէ վայրէ՝ նորում ասէ. զկին ժրագլուխ եթէ ոք գտցէ. նոյնիւք ալֆաբէտիւք կամ ատիքիւք ի բաց կոճոպին: Բայց հինգ տառք կրկինք են առ Եբրայեցիս: Կաֆ. Մէմ. Նուն. Պէ. Սադէ: Զի այլաբար գրին սոքօք սկզբունք եւ մէջք բայից. այլապէս աւարտք: Ուստի եւ հինգ գիրք 'ի յոլովից իմն կրկնակք թուին. Սամուէլ՝ Մէլաքիմ. Դիբրէ հայամիմ. Եզրաս. Երեմիաս. հանդերձ Ճինօթիւ՝ այս է Ողբովք իւրովք: Արդ ուրեմն որպէս քսան եւ երկու տառք են, ի ձեռն որոց գրեմք եբրայեցերէն զամենայն զոր խօսիմք. եւ նոցա կցմամբք ձայն մարդկային պարփակի. այսպէս քսան եւ երկու մատեանք ստորիմանին. որովք իբրու տառիւք եւ առսկսմամբք, 'ի ներհմտութեանն Աստուծոյ. եւ զեռ եւս տհաս եւ կաթնաբոյծ առն արդարոյ խրատի տխմարութիւն:

Առաջներորդն առ նոսա գիրք կոչի Բէրէսիթ. զոր մեք կոչեմք Ծննդոց. նաեւ Արարածք: Երկրորդն Վէէլէ սէմօթ. որ ելք

յորջորջի։ Երրորդն Վիիկրայ. այսինքն է Ղեւտացւոց։ Չորրորդն Վայէ դաբբեր. զոր Թիւս առձայնեմք։ Հինգերորդն Ելէ հադդեբարիմ. որ երկրորդ օրէն նախանշանակի։ Այսոքիկ են հինգ գիրք Մովսէսի. զորս յատկապէս Թօրա. այս է զՕրէն վերաձայնեն։

Երկրորդ զՄարգարէից կարգն առնեն։ Եւ սկսանին 'ի Յեսուայ որդւոյ Նաւեայ. որ առ նոսա Յեսուէ բին Նուն ասի։ Զկնի այնորիկ ստորահիւսն զսօփէտիմն. այս է Դատաւորացն գիրք. եւ 'ի նոյն շարայարեն զՀռութն։ Քանզի յաւուրս դատաւորաց արարք նորա ճառին պատմութեամբ։ Երրորդ հետեւի Սամուէլ. զոր մեք Թագաւորաց զԱռաջներորդ՝ եւ զերկրորդ ասեմք։ Չորրորդ Մէլաքիմ. այս է Թագաւորաց. որ երրորդին եւ չորրորդին Թագաւորաց մատենին շարունակի։ Բայց յաւէտ բարեգոյն է Մէլաքիմ այս է Թագաւորաց ասել. քան Մամլաքօթ՝ այսինք է Թագաւորութեանց. զի ոչ բազմաց ազգաց գրեաց զԹագաւորութիւնս՝ այլ միոյ իսրայելացւոյ ժողովրդեան. որ ցեղիւք երկոտասանիւք պարունակի։ Հինգերորդն Եսայիաս։ Վեցերորդն Երեմիա։ Եօթներորդն Եզէկիէլ։ Ութերորդն

երկոտասան Մարգարէքն՝ որ առ նոսա կոչի Թէրէ ասար։

Երրորդ կարգ զՀաջիօգրաֆայն պարփակէ։ Եւ զառաջներորդ գիրք սկսանի 'ի Յօբայ. երկրորդ 'ի Դաւթէ. զոր հինգ հատորօք, եւ միով մատենիւ Սաղմոսաց շարունակեն։ Երրորդն է Սաղօմօն զերիս գիրս ունելով. զԱռակսն. զորս նոքա Միսլէ. այս է Առակաց յորջորջեն։ Չորրորդն Էկղէսիաստէս. այս է Կօհէլէթ։ Հինգերորդն երգ երգոց. զոր վերնագրով Սիրհասիրիմ նախանկարեն։ Վեցերորդն է Դանիէլ։ Եօթներորդն Դիբրէ հայամիմ. այս է ճառք աւուրց. որ բացորոշաբար Քրօնիկօն բովանդակի Աստուածայնոյ պատմութեանն կարեւք յորջորջել. որք գիրք առ մեզ Մնացորդաց առաջներորդ եւ երկրորդ ենթադրին։ Ութերորդն Եզրաս. որ եւ նմանապէս առ Յոյնս՝ եւ Դաղմատացիս յերկուս գիրս բաժանեալ է։ Իններորդն Եսթեր։

Արդ այսպէս լինին միահամուռ հնոյ օրինին գիրք քսան եւ երկու։ Այս է. Մօսէսի հինգ՝ եւ Մարգարէիցն ութ։ Հաջիօգրաֆօրում այս է սրբագրացն ինն։ Թէպէտ ոչ երբեք զՀռութն. եւ զԿինօթն ի մէջ Հաջիօգրաֆիցն գրոտեն. եւ զգիրս զայսոսիկ

ներ իւրում համարում կարծեն չարաթուեալս. եւ ի ձեռն այսորիկ գոլ նախկնի օրինի մատեանս քսան եւ չորս:

... զի կարասցուք գիտել՝ զինչ ինչ արդեօք արտաքոյ սոցա է՝ ի մէջ ծածկելոցն գոլ գնելի: Ապաքէն Իմաստութիւնն. որ 'ի յոլովից Սողոմոնի ենթադրի: Եւ Յեսուայ որդւոյ Սիրաքայ գիրք՝ եւ Յուդիթ՝ եւ Տուբիթ՝ եւ Պաստոր. ոչ են ներ կանոնում: Մակաբայեցւոց զառաջներորդ գիրսն Եբրայական գտի: Երկրորդն Յունական է. որ յայնմանէ եւս տրամաբանութենէ փորձիլ կարէ:



